№ 16

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ

# ԵՐԻՏԱՍԱՐԴ ԹԻՒՐՔԻԱ

ԳՐԵՑ

Ս. ՍԱՊԱՀ-ԳԻՒԼԵԱՆ

ԳԻՆՆ Է 50 ՍԱՆՏԻՄ

ՓԱՐԻԶ

1908

# ՁՕՆ

*Իմ թանկագին ընկեր*

**ԱՐԱՄ ԱՉԸԳՊԱՃԵԱՆԻՆ**

*Քե՛զ, թանկագին ընկե՛ր, քե՛զ եմ նուիրում գրքոյկս, քեզ՝ որ ՔՍԱՆ տարիներից ի վեր՝ քո օրինակելի գործունէութեամբ ՀԱՅ ՅԵՂԱՓՈԽՈՒԹԵԱՆ ռահվիրաներից մէկն ես եղել և անձիդ վրայ արտացոլացրել՝ ազնիւ, անվեհեր և անչողդողդ Յեղափոխականի բոլոր յատկութիւնները։*

*Ընկերդ՝*

*Ս. ՍԱՊԱՀ-ԳԻՒԼԵԱՆ*

6 Փետր. 1908
ՊԱՐԻԶ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Ներկայ աշխատութիւնը գրուած է եղել 1899-ին եւ հրատարակուել «Հնչակ»ի 1900 № 7-ի եւ 1901-ի № № 1, 2, 3-ի մէջ։

Վերարտատպում ենք համարեա՛ թէ անփոփոխ՝ բացի մի քանի կտոր յաւելումներից, որ եղած են լոկ պարզաբանութեան տեսակէտից։

Մեր ընդհանուր նպատակն է եղել այս գրուածքով պատկերացնել «ԵՐԻՏԱՍԱՐԴ ԹԻՒՐՔԻԱ»ն այնպէս, ինչպէս որ նա երեւան է եկել պատմութեան ընթացքում, ցոյց տալ Թիւրքիայում ու Թիւրքիայի շուրջը յուզուող խնդիրների ընդհանուր բնաւորութիւնը եւ «Երիտասարդ Թիւրքիայ»ի դէպի այդ խնդիրները բռնած դիրքը։

Խնդրի վրայ մենք նայել ենք *քաղաքական, ազգային* տեսակէտից, որովհետեւ «*Երիտասարդ Թուրքեր*»ը միայն այդ ուղղութեամբ են որոշեալ հայեացակէտեր երեւան դրել եւ գործունէութիւն ցոյց տուել։

Անշուշտ մենք չէինք կարող Սոցիալ-Դէմոկրատական սկզբունքներով քննադատել մի Կուսակցութիւն, որ արդէն այդպիսին չի եղել։

Խնդիրների լուսաբանութեան համար մենք պիտի ընտրէինք այն մեթոդը, որ արդէն ընտրած ենք։

6 Փետրվար, 1908 Ս. Ս.-Գ.
ՓԱՐԻԶ



I

# ՊԱՏՄԱԿԱՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ

*Ո՞վ են և ի՞նչ ցանկանում “Երիտասարդ Թուրքեր”ը ։*

*— Այդ հարցին փաստօրէն պատասխանելու համար հարկաւոր է մի փոքր յետ երթալ, պատմութեան էջերը թերթել։*

*Թիւրքիայի գոյութեան պատմութիւնը, սկզբից մինչև մեր օրերը, երեք որոշ շրջանների կարելի է բաժանել։ Առաջին շրջանը՝ որ ընդգրկում է աւելի քան երեք հարիւր տարուայ կեանք, Թիւրքիայի սկզբնական ծագման և աճման ժամանակամիջոցն է, որ սկսում է Էրթուղրիլից և հասնում մինչև Վիեննայի յայտնի պաշարումը* (1288-1683) ։

*Սկզբնական այդ շրջանի մէջ՝ Օսմանի անունով յայտնի եղող փոքրիկ վաչկատուն ժողովուրդը հետզհետէ կազմակերպւում, ծաւալ է ընդունում և Փոքր-Ասիայի մէջ ապրող համացեղ և օտարասեռ տարրերին իր լծի տակն առնելուց և նրանց երկիրները տիրապետելուց յետոյ՝ մտնում է յարձակողական, աշխարհակալական դիրքի մէջ։*

*Հայաստանը՝ այդ ժամանակ պատա՛ռ-պատա՛ռ՝ արի՛ւն էր որ հոսեցնում էր։*

*Եւրոպական փոքրիկ պետութիւնները անկազմ, հարեւան հարեւանի հետ անհամերաշխ, բոլորովին անպատրաստ՝ զինուորական մի ահարկու թշնամու ընդդիմադրելու, ամէնքն էլ սարսափահար դողում էին այն աշխարհակալ բանակներից, որ անամբարտակելի հեղեղի նման հետզհետէ դէպի արեւմուտք էին ընթանում և ամէն ինչ իրենց հոսանքի մէջ առած՝ աւերում, քանդում, առաջ էին քշում։*

*Այդ շրջանի մէջ Օսմանցին աշխարհակալ ազգի զինուորական բոլոր յատկութիւնները ցոյց տուեց։ Սակայն նա միայն*

աշխարհակալեց, տիրապետեց, չունեցաւ, երեւան չբերեց բարձր ազգերին յատուկ քաղաքացիական այն յատկութիւնները, ընդհանուր այն կուլտուրան, որ կարող էր նրան միջոց տալ կազմակերպելու՝ օրգանական մի ամբողջութեան, մի ազգութեան վերածելու նուաճուող երկիրներն ու ժողովուրդները։ Նա բացարձակապէս անկարող եղաւ տիրուող այլասեռ տարրերի մէջ փոխադարձ համերաշխութեան կապեր հաստատել՝ նրանց բոլորին իր հետ կապել և ցրուած, անկերպարան մասերի ամբողջացուցիչ, շաղկապող կեդրոնը դառնալ։ Նա տիրել էր սրով, սուրը ձեռքին էլ շարունակեց ապրել՝ "ինչպէս մի բանակած զօրախումբ", մոռանալով սակայն որ սուրը ամէն ինչ չէ, — և նա այդ զգաց իր պատմութեան երկրորդ շրջանի մէջ, որ այլեւս շա՛տ ուշ էր։

Երբ օսմանեան աշխարհակործան հոսանքը ամէն ինչ իր տակն առնելով՝ հասաւ Վիեննայի պարիսպներին (1683), այդտեղ բաղխեցաւ մի հաստահիմն ամբարտակի և այլեւս անկարող լինելով ճեղքելու, առաջ ընթանալու, հոսանքը կանգ առաւ և յետախաղաց ղիրք ընդունեց։

Անխոցելի կարծուած օսմանցու պարտութեան առաջին նշաններից խրախուսուած՝ Աւստրիան, Լեհաստանը, Վենետիկի հասարակապետութիւնը, զանազան մանր ազգութիւններ և ասպետների խմբեր այնուհետև, պարբերաբար, Օսմանցուն յետ մղելը իրենց առաջնորդող գաղափարը դարձրին։

Զանցաւ շատ ժամանակ՝ Թիւրքիայի թշնամիների բանակի մէջ երեւան եկաւ և՛ մի նոր՝ երիտասարդ, աշխարհակալական ամէն բնազդներով օժտուած ազգ՝ Ռուսիան։

Թիւրքիան այժմ իր առաջ տեսնում էր ո՛չ միայն սահմանակից պետութիւնների վերակազմուած զինուորական ոյժը, այլև նրանց մէջ կայացած համերաշխական գաղափարի մի ուրուագիծ՝ իրեն վերջնականապէս տապալելու։ Պատերազմի դաշտ ի հարկին դուրս եկող բազմաթիւ զօրեղ ազդակներին այլեւս անկարող լինելով դիմագրաւելու, նա իրեն համար անհրաժեշտութիւն համարեց յարձակողական դիրքից պաշտպանողականի մէջ մտնե-

լու. նպատակ ընտրելով բաւականանալ միայն իր արդէն տիրապետած երկիրները պահպանելով։

Սակայն՝ իր պատմութեան այդ երկրորդ շրջանի նոյն իսկ սկզբի օրերից՝ ո՛չ միայն Թիւրքիան անկման բացարձակ նշաններ սկսեց ցոյց տալ, ո՛չ միայն ծաւալուող հարեւան պետութիւնները կարող եղան միացած կամ առանձին առանձին իրենից ընդարձակ տարածութեամբ հողեր գրաւել, այլեւ նրա համար ծածուկ չմնաց եւ՛ այն հանգամանքը, որ իր բոլոր հին ու նոր թշնամիները իրեն գոյութիւնը փոխարինող նոր բաղկացութիւնների մասին էին խորհում։ Այդ դեռ հերիք չէր։ Իր բաղկացուցիչ, մեռած կարծուած ազգութիւնները հանդէս էին բերել ո՛չ միայն կենսունակութեան հաստատուն պայմաններ, ո՛չ միայն հրապարակային դժգոհութիւններ էին արտայայտում դէպի ինքը, այլեւ իրենց սեպհական անկախութեանը ձգտում եւ փրկութեան համար աչքները դէպի իր թշնամիները դարձընում։

Պարզ էր, որ այդ պայմանների տակ, թողած իր սեպհական ոյժերին, Թիւրքիան անկարող պիտի լինէր ընդդիմադրելու թէ՛ իր ներքին եւ թէ՛, մանաւանդ, արտաքին քայքայիչ յարաճուն ազդակներին։ Նրա անկումը անխուսափելի էր նկատւում ամէնքի կողմից։ Բայց խնդիրն այն էր՝ թէ ո՞վ, որո՞նք պիտի լինէին նրա ընդարձակ երկիրները ժառանգողները, նրա թողած բաց տեղը բռնողները։ Եւ անկարող լինելով հաւաքականօրէն այդ հարցը արմատապէս լուծելու, պետութիւնները ստիպուեցան զանազան ուղեգծեր, կիսամիջոցներ ընդունելու։

Ա. — Նախապէս ընդհանուր համերաշխութեան գալ իրարու հետ, միանալ եւ ապա բաժանել։

Բ. — Պահպանել՝ երբ ընդհանուր համաձայնութեան չէր կարելի յանգիլ։

Գ. — Օգնել, միջոց տալ նոր զարթնող, Թիւրքիայի բաղկացուցիչ մասերը կազմող ազգութիւններին, որ իրենց բուն հայրենի երկիրը յետ ստանան։

Ահա քաղաքական այն ընթացքը, որ գծեցին պետութիւնները Օսմանցու նկատմամբ, նրա գոյութեան երրորդ շըր-

ջանի մէջ, որ սկսում է 1815-ից մինչև մեր օրերը։

Եթէ ընդհանուր առմամբ բոլոր պետութիւնները Թիւրքիայի գոյութիւնը Եւրոպական հաւասարակշռութեան համար առժամանակեայ անհրաժեշտ չարիք էին համարում, մինչև նրա բաժանման համար ընդհանուր համաձայնութեան կայանալը, սակայն կային էլ պետութիւններ, որոնք իրենց միայուն շահի տեսակէտից ցանկանում էին տեսնել մի Թիւրքիա՝ բարեկարգուած, զօրեղ և իր սեփական ներքին ոյժերով ապրելու կարող։ Այս վերջին տամադրութիւնը, մանաւորապէս, ցոյց տուին Ֆրանսիան և Անգլիան։ Ահա թէ ի՛նչու այդ երկու պետութեանց ներկայացուցիչները, զանազան ժամանակներում, սրտանց աշխատեցին ամէն կարգի ճնշում ի գործ դնել Թրքական պատասխանատու պաշտօնեաների և կառավարիչների վրայ՝ երկրի մէջ քաղաքական և ընկերային անհրաժեշտ բարենորոգումներ ներմուծելու՝ Թիւրքիան եւրոպականացնելու։

II

## „ԵՐԻՏԱՍԱՐԴ ԹԻՒՐՔԻԱՅ"Ի ԾԱԳՈՒՄԸ

Թիւրքիայի գոյութեան ներքին և արտաքին պայմանները, պետութեանց բռնած քաղաքական ընթացքը չէին կարող, հարկաւ, չազդել և՛ բուն Թուրքերի վրան։ Եւ արդարև, որքան որ իսլամութիւնը մարմնացնող ազգակները դարերի ընթացքում ջանացին ամէն կարգի արգելքներ հանել և թոյլ չտալ որ եւրոպական մտքի արտայայտութիւնները մուտք և ծաւալ գտնեն Խալիֆայութեան երկրների մէջ, որքան որ օսմանցի ժողովրդի բիրտ մոլեռանդ- կան բնազդը աշխատեց իրեն հեռու պահել եւրոպականութիւնից — այնուամենայնիւ թէ՛ կրօնական և թէ՛ քաղաքական ներկայացուցիչ, իրենց բոլոր նեցուկներով՝ անզօր եղան պատնէշել լուսաւորութեան յառաջընթաց հոսանքը, անանցանելի պատուար քաշել քաղաքակրթութեան ծաւալման առաջ։ Թուրքը՝ որ մինչև այդ ժամանակ եղած էր միայն նիւթական կոպիտ ոյժ, զուրկ ստեղծական կարողութիւնից,

որ իր մտածմունքը, ներշնչումների ձևերը, գոյնը, յաճախ առարկան իսկ, Պարսկից և Արաբից էր փոխ առած — այլևս անկարող լինելով հին ուղղութեան մէջ շրջանակուելու, անհրաժեշտութիւն նկատեց գլուխ ծռել պատմութեան հանդէս բերած նոր պայմանների առաջ և երևան եկած նորանոր պէտքերին բաւականութիւն տալու համար՝ աչքերը ուղղեց դէպի արեւմուտք՝ Եւրոպա։ Իսկ իրերի ծնեցրած այդ դիտումի ընդհանուր հետևանքներից մէկն էլ այն եղաւ, որ յառաջ եկան գրողների, մտածողների նոր շարքեր, նոր խմբեր, որոնք մի կողմ ձգելով անպէտք դարձած հինը, աշխատեցին ճանաչել իրենց երկիրը և ուսումնասիրել Եւրոպան ու նրա հասարակական-քաղաքական հաստատութիւնները։ Օսմանեան այդ նորածին, թարմ ոյժը՝ իր ձգտումներին յագուրդ տալու համար՝ դիմեց եւրոպական մտքին, գլխաւորապէս ֆրանսիական գրականութեան, և նորեկին յատուկ եռանդով ամէն ինչ սկսեց չափել, ձևել այս վերջինիս վրան։ Պարսկականի և արաբականի տեղ այժմ բռնեց ֆրանսիական լեզուն, ֆրանսիական գրականութիւնը։

Բայց ֆրանսիական ճոխ լեզուն, հոյակապ պատմութիւնը, հարուստ գրականութիւնը իրենցմով հետաքրքրուողներին միայն զգացմունքի ձևեր արտայայտելու միջոց չպիտի ընծայէին, այլ և՛ մտածմունքի, խորհելու առատ նիւթեր։ Այն ազգը՝ որ մի քանի յեղափոխութեանց երկար, դժուարին բովիցն էր անցել և համայն աշխարհի սքանչացումը գրաւել, — արտադրել էր քաղաքագիտական գրողների, մտածողների այնպիսի հսկայ շարքեր, որոնք անկարող էին իրենց գրոշմը չդնել, այս և այն չափով, իրենց ընթերցողների վրան։ Եթէ եղան Թուրք երիտասարդներ, որոնք նպատակ դրեցին իրենց հայրենիքը փոխադրել ֆրանսիական գրականութեան գեղարուեստական կողմը, սակայն եղան շատերն էլ, որոնք աշխատեցին օրինակել, հետևել ֆրանսիական քաղաքագիտական մատենագիրների ասածներին և ցանկացան նրանց մտածմունքի արդիւնքները, ինչպէս որ իրենք էին հասկացել, իրենց երկրի մէջ ծաւալել։

Քաղաքագիտական ուղղութեամբ գրելու տեսակէտից Թուրքերը առաջ են Հայերից։ Տասնիններորդ դարու 30-ական

Թուականը Թուրք գրականութեան մէջ առաջ էր բերել քաղաքագիտական գրողների մի որոշ խումբ, որոնց ընդհանուր միտումների ամփոփողը և արտայայտիչը եղաւ Ռէշիդը։ Իսկ Հայերը դեռ երկար տարիներ պիտի սպասէին, մինչև որ ասպարէզ մտնէր Միքայէլ Նալբանդեանը, — Հայ քաղաքագիտական առաջին գրողը։

Ի՞նչ պատկեր էր ներկայացնում Թիւրքիան երիտասարդ գրչի տէր քաղաքական այն բարենորոգիչներին, որոնք՝ ինչպէս իրենք էին ասում՝ սնուած Արեւմտեան Եւրոպայի յառաջադէմ գաղափարներովը, վրանին առան "Ե ր ի տ ա ս ա ր դ Թ ո ւ ր ք ե ր" անունը և իրենց հրապարակային, հասարակական գործունէութեան նպատակ ընտրեցին վերածնութեան մէջ դնել իրենց երկիրը և հին, մգլոտած, խարխլած Թիւրքիայից վերաշինել, առաջ բերել մի Նոր՝ "Ե ր ի տ ա ս ա ր դ Թ ի ւ ր ք ի ա"։

Ահա այդ պատկերը.

— Մի երկիր՝ բաղկացած բազմատարր ցեղերից ու ազգութիւններից, որոնցից ամէն մէկը ունէր իր ազգային անհատական առանձին կեանքը, իր գոյութիւնը պահպանելու հաստատուն հիմունքները։ Չկար այդ տարրերի մէջ փոխադարձ համերաշխութեան և ո՛չ մի կապ. ո՛չ մի անցեալ, հասարակական և ո՛չ մի հաստատութիւն կար՝ որ այդ օտարասեռները իրարու հետ շաղկապելուց յետոյ, ամուր կերպով նրանց կապէր տ ի ր ո ղ տ ա ր ր ի, Օ ս մ ա ն ց ի ի հ ե տ, և այդպիսով բոլորից կազմէր մի ամբողջութիւն, օրգանական մի մարմին, մի ազգութիւն։

Պետական կազմակերպութեան տեսակէտից նրանք տեսնում էին՝ որ Թիւրքիան ներկայացնում էր մի անկազմ, անկերպարան երկիր, կեղեքումների որս, յափշտակութեան վայր՝ բոլոր պաշտօնական ու անպաշտօն կառավարիչ-հարստահարիչների համար, "երկիր՝ ուր աղաւնին իսկ գողանում էր"։ Մի կառավարութիւն՝ որի "գլուխը", "ուղեղը" Պօլիս նստած, անձնատուր էր եղած ցոփակեաց կեանքի ամէն նրբութիւններին, անհոգ, անընդունակ՝ պետական նաւը ժամանակի հոսանքի հետ առաջ վարելու. որ երկրի գոյութեան, պահպանութեան միակ գրաւականը նա այլեւս չէր

սպասում իր սրից, ինչպէս առաջ, այլ իր ժառանգորդները լինելուն աչք դնող պետութեանց փոխադարձ նախանձից, մրցումից և հակառակութիւններից: Իսկ այդ բոլոր թուլութիւններից օգտուելով՝ նուաճուող ազգերից ոմանք արդէն յաջողել էին իրենց ազատութիւնը ձեռք բերել, ոմանք էլ ապստամբութեան դրօշը պարզելու շաւղին մէջ մտել և իրենց մօտալուտ անկախութիւնը երազում, ու պատմութեան ընթացքը որոշակի ցոյց էր տալիս որ մի օր նոյն ուղին պիտի ընդունէին և՛ միւս ազգութիւնները, եթէ իրերի արդէն եղած դրութիւնը նոյնութեամբ շարունակուէր, այնպէս որ մի օր Օսմանցին պիտի զարթնէր և իրեն տեսնէր հալուած, բոլորովին կազմալուծուած, քաղաքական կեանքից վայր իջած: — Ահա այն պատկերը՝ որ տալիս էր նրանց իրականութիւնը, հեռանկարը՝ որ պարզում էր պատմութեան ընթացքը:

Ի՞նչ էր և ի՞նչ եղած այդ բոլորի հանդէպ կառավարիչ այն խմբի ցանկութիւնները, որոնց այնուհետև իրենք սկսեցին անուանել "Ծ ե ր ո ւ ն ի  Թ ո ւ ր ք ե ր": Ի՞նչ ընդհանուր ծրագիր, ի՞նչ մեթօդ, քաղաքական ի՞նչ ուղեգիծ էին նրանք ընդունել դէպի այլակրօն, այլացեղ տարրերը և ի՞նչ հիմունքների վրայ դրել պետութեան կազմը:

— Ոչ-մահմետականներին ռ ա յ ե ա յ դարձնելով՝ նրանց բոլորովին կղզիացրել էին և պետութեան մէջ առաջ բերել կողք կողքի ապրող՝ իրարու խորթ, օտար, թշնամի մարմիններ: Ռ ա յ ե ա ն ե ր ը քաղաքական կեանքից բոլորովին արտաքսուած լինելով՝ սկզբունքով ո՛չ բանակի մէջը կարող էին ընդունուել և ո՛չ էլ հասարակական, պետական պաշտօններ ստանալ, բացի քմահաճոյքի թելադրութիւնից: Պետութիւնը ամէն իրաւունք ունէր դէպի այդ տարբեր անցեալ, տարբեր կրօնք ու սովորութիւններ ունեցող ցեղերը, առանց սակայն ոևէ պարտականութիւն ստանձնելու: Քաղաքական անհաւասարութեան ստեղծելով էր, որ "Ծերունիներ"ը մտածել էին ընկերային անհաւասարութիւնը մշտնջենաւորել, և այդ մեթօդով՝ տիրուող ոչ-մահմետականներին շարունակ արտադրութեան խօսուն գործիք դարձնելով՝ նրանց յարատև հպատակութեան, հնազանդութեան մէջ պահել:

Իսկ օսմանեան գահակալները այդ մի և նոյն հպատակ ժողովուրդների հետ իրենց յարաբերութիւնները դիւրացնելու համար՝ յարմար միջոց էին համարած իւրաքանչիւր դաւանութեան պատկանող քրիստոնեաներից կրօնական առանձին համայնքներ կազմելու, և նրանց կրօնական պետին իր հօտի հաւատարմական զգացմունքներին պատասխանատու ճանաչելու։

Արդ, որքան որ “Ծերունի Թուրքեր”ի կամ մինչև այդ ժամանակ երկրի կարգ ու կանոնը տուող պահպանողական խմբի ձեռք առած միջոցները կարող լինէին անզօրութեան, հնազանդութեան ու կրաւորական դիրքի մէջ դնելու զանազան հակաշահ և հակամարտ ձգտումներ ունեցող տարրերին — այնուամենայնիւ նրանք անկարող էին արմատախիլ անել, մոռացնել տալ այդ ժողովրդներին իրենց անհատականութիւնը կազմող տարրերը և նրանց բոլորը ի մի ձուլելուց յետոյ՝ մի ժողովուրդ, մի մարմին ձևացընելու։ Ինչքան որ հպատակ ազգերը սահմանափակ շրջանի մէջ էին դրուած, գարձեալ՝ “Ծերունի Թուրքեր”ի շնորհած միջոցներով՝ հպատակ իւրաքանչիւր համայնք կարողանում էր վառ պահել իր անցեալի յիշատակները, մշակել, ընդարձակել իր գոյութեան հիմունքները և իր առանձին իդէալը ունենալ,—իդէալ որ բնաւ համապատասխան չէր օսմանեան պետական շահերին։ Մի խօսքով՝ օսմանեան կայսրութեան ունեցած քաղաքական կազմակերպութիւնը իր անկումը անխուսափելի պիտի դարձնէր, եթէ չաշխատուէր այդ երկիրը նոր հիմունքների, նոր խարիսխների վրայ դնելու։

Եւ վերակենդանացնելու այդ պատմական ծանր պաշտօնը իրենց վրայ առնել ուզեցին Ռէշիդը ու իր գաղափարակից ընկերները, որոնք իրենց վերակազմեալք Նոր Թիւրքիան՝ հինից տարբերելու համար՝ անուանեցին “Երիտասարդ”։

## III

## “ԵՐԻՏԱՍԱՐԴ ԹԻՒՐՔԻԱՅ„Ի ԸՄԲՌՆՈՒՄՆԵՐՆ ՈՒ ԾՐԱԳԻՐԸ

*Ի՞նչ էին "Երիտասարդ Թուրքեր"ի ղեկավարիչ սկզբունքները:*

*— Թիւրքիան վերակազմել, վերահաստատել այնպիսի հիմունքներով, որ նրա մէջ ապրող զանազան այլացեղ, այլակրօն տարրերը, ժամանակի ընթացքում, յառաջացնէին, կազմէին մի զանգուած, մի մարմին, մի ժողովուրդ, մի ազգութիւն։ Ո՛չ թէ կղզիացած, իրարու խորթ ու թշնամի ցեղեր, այլ մին միւսի շարունակութիւն կազմող մասեր, որոնց բոլորին մէջ պիտի տիրէր ընդհանուր ներդաշնակութիւն, ընդհանուր կապ: Տարբեր ժողովրդների մէջ գոյութիւն ունեցող վիհերը, խորութիւնները վերացնել, արմատախիլ անել, ջնջել նրանց ինքնուրոյնութիւն տուող պայմանները, արտօնութիւնները և այդ բոլորից՝ առանց խտրութեան՝ կազմել մի ամբողջութիւն, որ ունենար նո՛յն ձգտումները, նո՛յն հաստատութիւնները, նո՛յն իդէալը: Ուրիշ խօսքով՝ մինչև այն ժամանակ գոյութիւն ունեցող զանազան համայնքների տեղ պիտի տիրէր մի համայնք, մի ազգութիւն՝ Օսմանեան։ Եւ այդ բոլորի համար հարկաւոր էին միայն փոխադարձ բարի տրամադրութիւններ, համաձայնութեան մի քանի արտաքին նշաններ, սկզբնական մի քանի թեթև փոփոխութիւններ, որպէսզի գոյութիւն ունեցող ամէն ինչ* table rase *— հարթ հաւասար — լինէր, պատմական ամէն անհատականութիւն իր անցեալը, ինքնուրոյնութիւնը մոռանար և Օսմանցի լինելու շաւղին մէջը մտնէր: Արևմըտեան լուսաւորեալ մտքերով տոգորուած "Երիտասարդներ"ը իրենց այդ ասածների հաստատութեանը կենդանի օրինակ էին բերում, գլխաւորապէս, Ֆրանսիան և Պրուսիան:*

*Մի Ֆրանսիա, ֆրանսիական մի ազգութիւն կազմող ժողովուրդը դեռ շատ ժամանակ չէ, որ բաժանուած էր տար-*

բեր միութիւնների, տարբեր ցեղերի, որոնցից իւրաքանչիւրը ունէր իր սեպհական լեզուն, ուրոյն անցեալը, տարբեր սովորութիւնները, նիստ ու կացը, ուր հիւսիսում ապրողը նոյնքան խորթ ու հակամարտ ձգտումներ ունէր դէպի հարաւայինը, որքան և արեւելքինը դէպի արեւմուտքը։ Սակայն այդ բոլորը ի մի ձուլուեցան կեդրոնական Իլ դը Ֆրանսից (Ile de France) ձեռք առնուած կառավարական միջոցների, հանրական օրէնքների ու հաստատութիւնների շնորհիւ, և այդպիսով այլազան ցեղերից կազմուեցաւ մի ժողովուրդ, մի ազգ՝ տոգորուած համանման զգացումներով, համանման շահերով։

Պրուսական պետութիւն կար, բայց ո՛չ ազգութիւն։ Բայց այսօրուան պրուսական ժողովուրդը՝ տարբեր տարրերից՝ զանգեց, թրեց, յառաջ բերեց պետութիւնը ինքը՝ իր տուած կազմակերպութեան շնորհիւ։

Արդ, ինչո՞ւ միեւնոյն ընթացքը չընդունել և՛ Թիւրքիայի նկատմամբ։ Քանի որ մի ծանօթ սկզբունք բարերար արդիւնք էր ունեցել մի երկրում, նոյն բարերար հետեւանքը կարող էր ունենալ և՛ մի ուրիշ երկրում, հարկաւոր էր միայն փոխ առնել, հետեւել՝ մտածում էին հետեւողականութեամբ առաջնորդուող "Երիտասարդներ"ը։

Ահա այն գաղափարները, որ իրենց բարենորոգչական գործունէութեան առաջնորդ ընդունեցին Թուրք "Երիտասարդներ"ը և աշխատեցին ո՛չ միայն այդ մտքերը իրենց քաղաքագիտական գրուածների մէջ արտայայտել, այլև ջանացին համախոհների մի շրջան ստեղծել, որ իր ձեռքը առնէր պետական գործերը և տեսական այդ գաղափարներին ոգի ու մարմին տար։ Լիայոյս լինելով, այսպէս, որ կարճ ժամանակամիջոցի մէջ իրենց առաջարկած միջոցները ո՛չ միայն յետս պիտի կասեցնէին օսմանեան պետութեան անկումը, այլև նրա հին երակների մէջ նոր արիւն հոսեցնելով՝ կարող պիտի լինէին հիմնապէս ամրապնդել և մի հոծ, ընդարձակածաւալ, ներդաշնակ մասունքներով շաղկապուած Օսմանեան ազգ յառաջ բերել, որի մէջ այլևս գոյութիւն չպիտի ունենային ներքին, ցեղական թշնամութիւններ, հակամարտ ձգտումներ, այլ ամէնքը գոհ,

միաձոյլ զանգուածի, անգծելի ապառաժի նման օտար թըշնամիների առաջը պիտի արձանանային։

Եւ իրենց վերածնութեան այս թուիչքի մէջ՝ "Երիտասարդներ"ը այնքան առաջ էին գնում, որ բոլորովին արդարացուցիչ և շահեկան էին համարում, ի հարկին, օտար համայնքների ամբողջական բռնի կրօնափոխութիւնը, կամ ամբողջական կոտորածները։—Այդ բոլորը նրանք մեղմացուցիչ անհրաժեշտութիւններ էին համարում ապագայի, սկզբունքի տեսակէտից։

Ֆրանսիական պետական անձնաւորութիւնները Ռէշիդին համարում էին օսմանեան Ռիշլէօ. իսկ անգլիացիները առանձնապէս ուրախ էին որ շուտով "Երիտասարդներ"ը ոտից ցգլուխ կվերակենդանացնեն օսմանեան պետութիւնը և այդպիսով միանգամից վերջ կը դնէին Արեւելեան Խնդրի ձանձրացուցիչ, բայց և վտանգաւոր մղձաւանջին։

Օժտուած բանաստեղծական ձիրքով, ինչպէս և քաղաքագիտական առանձին յատկութիւններով, մի քանի անգամ փոխն ի փոխ դեսպանական պաշտօններ վարած Պարիզում, Լօնդօնում, Քեօթահիայի և Ադրիանապօլսի յայտնի բանակցութեանց մասնակցած, քանիցս արտաքին գործերի նախարարի պաշտօն ստանձնած ու եւրոպական նշանաւոր պետական անձերի բացայայտ շնորհը վայելած,—Ռէշիդը (փաշա) իր գաղափարների տարերքին մարմին տուեց Գիւլհանէի հատտի Շէրիֆով։ Աբդիւլ Մէջիդի օրօք հաստատուած քաղաքական այդ գործողութիւնը ո՛չ միայն առաջ եկաւ Ռէշիդի և իր համախոհների աշխատութեամբ և թելադրութեամբ, այլ այդ "Թրքական Magna Charta"-ի խմբագրողը ինքը՝ Ռէշիդը եղաւ։ Դրանով Թիւրքիան մի համատարր ամբողջութիւն նկատուելով՝ ամէն տեղ ստեղծւում էին համատիպ "համայնական ու նահանգական խորհուրդներ", "արդարադատութեան կազմակերպութիւն" ամէնքի համար՝ առանց խտրութեան, "ընդհանուր ապահովութիւն" օսմանեան ամէն հպատակների համար, և "կանոնաւոր հարկատուութեան ընդհանուր սիստէմ" կայսրութեան բոլոր մասերի մէջ։

—Ահա բարենորոգչական այն գլխաւոր գծերը, որ չափեցին, ձեւեցին “Երիտասարդներ”ը՝ վերակենդանացնելու, եւրոպականացնելու համար ամբողջ Թիւրքիան։

Այդ քայլը թէ՛ յանդուգն և թէ աննպատակայարմար նկատուեց “Ծերունիներ”ի կողմից։

Բայց որքան որ եւրոպական գաղափարներով ասպարէզ իջած բարենորոգիչների փայփայած մտածմունքները առաջին անգամին իսկ իրականութեան ժայռին բաղխելով՝ անպտուղ մնացին, այնուամենայնիւ հետեւողների շարքերը անպակաս չեղան։

Ֆուադ, Ալի, Ջէմալ շարունակեցին իրենց ուսուցչի և ընկերակցի գծած ուղղութեամբը ընթանալ և իրենց “լուսաւոր” գաղափարները ամփոփեցին, մի քիչ աւելի ընդարձակ ձեւով, Հատտի Հիւմայիւնի մէջ (18 փետր. 1856) ու դրեցին Պարիզի դաշնագիրն կնքող պետութեանց ներկայացուցիչների առաջ։

Այս անգամ՝ “Երիտասարդ Թիւրքիան” յայտարարում էր ո՛չ միայն ընդհանուր ապահովութեան, այլև ընդհանուր ազատութեան և օրինական հաւասարութեան սկզբունք՝ օսմանեան բոլոր հպատակների համար, առանց ցեղի ու կրօնի խտրութեան։ Միւսլիմանների և քրիստոնեաների մէջ եղած տարբերութիւնները ջնջւում էին ու քրիստոնեաները ընդունւում՝ զինուորական բոլոր աստիճանների, քաղաքացիական բոլոր պաշտօնների մէջ։

Այսպիսով՝ “Երիտասարդներ”ը մի նոր գրութեամբ անհետացնում էին օսմանեան երկրի մէջ եղած ցեղերի դարաւոր թշնամութիւնների պատճառը, ջնջում էին ներքին երկպառակութիւնները, վերացնում կրօնական խտրութիւնից առաջացած անհաւասարութիւնները և մէջտեղը դնում Օսմանեան ներդաշնակ ամբողջութիւնը։ Այլևս պետութիւնը արմատապէս բուժուած, վերակազմուած էր, կարծում էին, հարկաւոր էր միայն մի քիչ սպասել՝ արդիւնքը վայելելու համար։

Ծնունդ իրենց ժամանակի տիրող գաղափարների, “Երիտասարդ Թուրքեր”ի յղացած մտածմունքները՝ օտար պետութիւնների թշնամանքների, հպատակ ազգերի անտար-

բերութեան և "Ծերունի Թուրքեր"ի հակառակութիւնների միջից անցնելով՝ առանց մի փոքր չափով պակասեցնելու գոյութիւն ունեցող ներքին և արտաքին բարդութիւնները— եկան հասան Միդհատին։

Ծայրագոյն աստիճանի փառասէր՝ բայց հանճարեղ, ազատամտութեան ջրդեղով՝ գիտակից մոլեռանդ, քրիստոնեայ ազգերին և նրանց քաղաքակրթութիւնը ի սրտէ արհամարհող, բայց նրանց զինուորական մեծութեան առաջ կքուող,— Միդհատը իր նախորդների յղացումները առաջնորդ ընդունելով՝ նախ աշխատեց տեսնել, ճանաչել օսմանեան գահի շուրջը բոլորուող ազգութիւններին. ուստի այդ նպատակով երկար ժամանակ մնաց Բուլղարիա, Ռումանիա և ապա անցաւ Եւրոպա, պաշտօնապէս ուսումնասիրելու, հետազօտելու համար եւրոպական ազգերի քաղաքական հաստատութիւնները, իր ուսումնասիրութեան արդիւնքից Թիւրքիային բաժին հանելու դիտումով։

Գերմանական Ռայխստագի նիստերից մէկում, 1875, պատգամաւորներից մին հարց ուղղեց Բիսմարկին, նրա կարծիքն իմանալու համար Եւրոպայի քաղաքական դրութեան մասին։

"Եւրոպական երկնքի վրայ ո՛չ մի ամպ չեմ նշմարում, բացի Հերցեգովինայի փոքրիկ սև կէտից",— պատասխանեց երկաթի ու կրակի ամենակարող զօրութեանը պաշտօն մատուցանող Երկաթի Կանցլերը։

Այլևս անկարող լինելով տանելու Թրքական մահացուցիչ վարչականութիւնը, Հերցեգովինայի մի բուռն ժողովուրդը դիմել էր զէնքի փրկարար զօրութեանը և պարզել ապստամբական դրօշը։ Իր հորիզոնի վրայ բարձրացած "փոքրիկ սև կէտը" փոթորկաբեր մի մեծ ամպ, ընդհարումների, արիւնհեղութիւնների աղբիւր դառնալու վրայ էր։

Բուլղարիան պատրաստւում էր իր կեանքը կամ մահը ապստամբական սրից խնդրելու։

Սերբիան, Մոնթէնէգրօն իրենց ցեղակիցների տանջանքների առաջ պատերազմական ընդհանուր թրթռումի մէջ էին մտել։ Իսկ Ռուսիայում համասլաւութեան ազդեցիկ կարապետները ամբողջ երկիրը "սրբազան ոգևորութեան" մէջ դը-

րած՝ առաջին ձայնին էին սպասում "տանջուող եղբայրներ"ին օգնութեան թռչելու։

Ցապաղելու ժամանակ այլևս չկար։ Ինքն իրան Օսմանեան Բիսմարկ համարող Միդհատը աճապարեց իր հռչակաւոր "յիշատակագիր"ը ուղղելու Բիսմարկին, նրան կրկնելով, փաստելով այն բոլոր բարիքները, որ կարող պիտի լինէին տալու՝ առանց ցեղի ու կրօնի խտրութեան ծրագրած բարենորոգումները, երբ նրանց ընդհանուր նպատակը լինէր առաջացնել ամբողջական, միաձոյլ, միևնոյն հաստատութիւններով օժտուած մի Թիւրքիա։

IV

## ՊԱՐԼԱՄԵՆՏԱԿԱՆ ԹԻՒՐՔԻԱ

Հերցեգովինան, Սերբիան, Բուլղարիան, 1876-ի աշնանը, արեան մէջ էին լողում։ Մեծ Պետութեանց ներկայացրած առանձնակի և հաւաքական ծանուցագրերն ու ազդարարութիւնները անհետեւանք էին մնացել Բ. Դրան կողմից։ Դեկտեմբերի 23-ին Կ. Պօլսում կայացաւ դեսպանաժողով (conférence), իրեն առարկայ ունենալով արեան թատր դարձած երկրներին բաւարարութիւն տալու, մշակելու բարենորոգումների մի ծրագիր և այդ ծրագիրը գործադրելու երաշխաւորութիւններ ապահովցնելու՝ Բ. Դրան կողմից։ Դեռ հազիւ առաջին նիստը սկսած, յանկարծ թնդանօթների որոտալից բոմբիւնը պետութեանց լիազօրներին յայտարարեց, որ այլևս իրենց աշխատանքին հարկ չկար, զի Թիւրքիան արդէն ունէր Սահմանադրութիւն, Պարլամէնտ, որ կարող էր Օսմանեան Ազգի և կայսրութեան երկրների մէջ ծագած բոլոր դժուարութիւններին պարլամենտօրէն վերջ տալ։ Եւրոպական պետութեանց քաղաքական բարձրագոյն ու ամենակարեւոր հաստատութիւններից մին արդէն վայելում էին Օսմանցիները՝ ասում էին "Երիտասարդ" ղեկավարիչները։

Իշխան Գորչակովը ծիծաղեց "Պարլամենտա-

կան Թիւրքիայի" անունը լսելիս։ Լիազօրները շարունակեցին իրենց ծրագիրը մշակել։ Միդհատը շտապեց Պարլամէնտի անդամները նիստի գումարել և նստաշրջանը բաց անել։ Երբ Դեսպանաժողովը իւր խորհրդակցութեանց արդիւնքը, ծրագրած որոշումները Բ. Դրան ներկայացրեց, Միդհատը պատասխանեց որ Թիւրքիան չէ կարող ընդունել օտար պետութեանց միջամտութիւնը իր ներքին գործերի մէջ, որ Ազգային Ժողովը՝ Պարլամէնտը իրենց միաձայն քուէով մերժել էին դրսից եկած որ և է առաջարկ ընդունելու։

Արդ, ի՞նչ էր այդ նոր Սահմանադրութիւնը, Պարլամէնտը, որի թէ՛ միւսլիման և թէ՛ քրիստոնեայ հաւատարիմ հպատակ բոլոր անդամները միաձայն քուէով աւելի նախապատիւ համարեցին "իրեն արեան մէջ խեղդել ապստամբ Բուլղարիան և նրան օգնութեան եկող համացեղ պետութիւնները, քան տեղի տալ"։

Նորից նախկին մտքերը, Ռէշիդի և իւր յաջորդների տածած գաղափարները, թէև այս անգամ աւելի լայն, աւելի որոշ կերպարանք առած։

"Եթէ Թիւրքիան մի բռնաւորի փոխարէն ունենար մի իմաստուն միապետ, որ յենուէր բոլոր ցեղերի ու կրօնների ներկայացուցիչներից բաղկացած Պատգամաւորական Ժողովի վրայ, ապա նա կփրկուէր"։ Թուրք հայրենասէրների արտայայտած այդ ցանկութիւններն էին (1876, մարտ), որ արձագանք գտան և, իրենց բոլոր նախակարապետների յղացումների հետ միասին, մարմին առան Սահմանադրութեան մէջ (1876, դեկ.), որի էական մասն է՝ Պատասխանատու Նախարարական Խորհուրդ, Ընդհանուր Ժողով՝ բաղկացած երկու Խորհրդարանից (Chambres), — Ծերակոյտ (Sénat) և Պատգամաւորական Ժողով (Chambre des Députés)։ Ազատութիւն մամուլի և հաւաքումների "օրինական սահմանների մէջ„, անփոփոխելի դատաւորներ, նախնական կրթութիւնը պարտաւորեցուցիչ, Իսլամը պաշտօնական կրօն, և այլն։

Կազմուած Իւլէմաների և պաշտօնեաների մի մասնաժողովից, Սահմանադրութեան հեղինակները, "Երիտասարդ

Թիւրքիան", այդ միջոցով օսմանեան պետութիւնը "բացարձակ բռնապետութիւնից Սահմանադրական միապետութեան էին վերածում, երկրի կառավարութիւնը Սուլթանի կամայականութիւնից ազատելով՝ Օսմանեան Ազգի ձեռքն էին յանձնում և, որ գլխաւորն է, ջնջւում էր Օսմանեան Ազգի միջից ներքին երկպառակութեան, ցեղային, կրօնական թշնամութեան ամէն աղբիւր և օտար՝ արտաքին պետութեանց միջամտութիւնը, Ազգային Ներքին գործերի մէջ, բոլորովին աւելորդ և անկարելի դարձնում":

Եւրոպական պետութեանց հաղորդագրելիս, Միդհատը ամենայն խնամքով յանձնարարեց, որ պետական այդ Նոր Հաստատութիւնը աստուածպետական և ո՛չ մի բնաւորութիւն ունէր, զի "նա հիմնում էր կայսրութեան մէջ ազատութեան, արդարութեան, հաւասարութեան թագաւորութիւնը և քաղաքակրթութեան յաղթանակը", և մանաւանդ, որ "Սահմանադրութիւնը մի խոստում չէր, այլ մի իրական և բացայայտ գործողութիւն, որ բոլոր Օսմանցիների սեպհականութիւնն էր դարձել արդէն":

Թէ "Սահմանադրութիւնը մի խոստում չէր" և "արդէն բոլոր Օսմանցիների սեպհականութիւնն էր դարձել"— դրա բացարձակ ժխտումը ցոյց տուին յետադայում կատարուած դէպքերը և այդ բոլորը միաժամանակ յայտարար նշան եղան նաև այն իրողութեան թէ հրէական ծագում ունեցող Միդհատը և իր նախորդները ո՛ր աստիճան կորովամտութիւն էին ունեցել ճանաչելու, հետազօտելու իրենց երկիրը և լրջօրէն ուսումնասիրելու եւրոպական ազգերի պետական հաստատութիւնները ու նրանց պատմութիւնը:

V

## “ԵՐԻՏԱՍԱՐԴ ԹԻՒՐՔԻԱ,,Ն ԱՐՏԱՍԱՀՄԱՆՈՒՄ

"Պարլամէնտ"ի լուծուելուց, Միդհատի և իր խմբակի անկումից յետոյ (փետր. 1877)՝ իրենց երկրի մէջ գործելու պայմաններ այլևս չգտնելով՝ "Երիտասարդ Թիւրքիայ"ի տածած սկզբունքներին հաւատարիմ մնացողներից աւելի գործօնները ապաստանեցին Եւրոպա. և այստեղ աւելի ու նուազ

հետեւողական ընթացք բռնելով՝ ջանացին իրենց նախորդների գործը շարունակել, պայքարելով նո՛յն գծերով, նո՛յն ուղղութեամբ, դաւանելով, աւելի կամ նուազ գիտակցօրէն, նո՛յն գաղափարները և նո՛յն մտքերը։

Մինչև Եւրոպա ապաստանելը՝ “Երիտասարդ Թիւրքիա”ն գործում էր երկրի մէջ, օրինական հողի վրայ կանգնած, իրեն նպատակ դարձնելով ձեռք առնելու երկրի օրէնսդրական և վարչական իշխանութիւնները, ինչպէս և կրօնական ու այլ “բարձրաստիճան” պետական անձնաւորութիւնները և այդպիսով իրականացնել իր փայփայած սկզբունքները։ Եւրոպա ապաստանելով՝ “Երիտասարդ”ները այլևս կորցրին օրինական հողը և միակ միջոցը՝ որ իրենց մնում էր, դա ապօրինական հողը — յեղափոխականութիւնն էր, զի իրերի բնական ընթացքը իրենց այդ դրութեան մէջն էր դրել։ Սակայն Եւրոպայի ասպնջականութիւնը վայելող “Երիտասարդներ”ը, շեղելով ստեղծուած նոր պայմանների՝ իրենց համար բացարձակ անհրաժեշտութիւն դարձրած միակ ուղեգծից, այն է յեղափոխական միջոցից և գործունէութիւնից՝ նրանք ընկան անորոշ, տարտամ մի վիճակի մէջ և անկարող եղան որ և է դրական արդիւնք ձեռք բերել՝ իրենց մղած թղթային, լրագրական պայքարով և ցոյցերով։

Ի՞նչ եղաւ նրանց դիրքը և գործունէութիւնը, իր ամբողջութեան մէջ՝ արտասահմանում։

Ի հարկէ մենք այստեղ աչքի առաջ չունինք “Երիտասարդ” ասուած այն դասալիքներին, որոնք արտասահման դուրս գալով, շանտաժիստի դերի մէջ էին մտնում՝ պաշտօններ և դրամական գումարներ ձեռք բերելու դիտաւորութեամբ։ Մեր խօսքը միայն նրանց մասին է, որոնք մինչև վերջ հաւատարիմ և հետևողական մնացին իրենց նախորդների՝ Ռէշիդի, Ֆուադի, Ջէմալի, Ալիի և Միդհատի պաշտպանած գաղափարներին։

Արտասահման ապաստանող “Երիտասարդ Թիւրքիայ”ի գործունէութիւնը, իր գլխաւոր գծերի մէջ, հետևեալը եղաւ.

Ջանալ վերահաստատել Միդհատեան Սահմանադրութիւնը՝ “Պարլամէնտը”, ինչպէս որ իրենք սովորութիւն

ունին առելու ։ Եւ դրա համար նրանք դիմումներ էին անում Կ. Պօլսոյ և արտասահմանի մէջ եղած Թուրք բարձրաստիճան անձնաւորութիւններին ու կրօնականներին ։

Այդ մտքով նրանք յիշատակագրեր էին ուղղում նո՛յն իսկ Սուլթան Համիտին ։ Միւս կողմից՝ իրենց հրատարակած թերթերով նրանք աշխատում էին համոզել երկրի մէջ եղող Թուրք ինտելլիգէնտներին և ուսանող երիտասարդութեանը, որ նրանք էլ ոյժ տան իրենց ձգտումներին ։ Թիւրքիային իր ներկայ կացութիւնից դուրս բերելու և Սուլէյմանների օրօք ունեցած "փառաւոր" դիրքի մէջ դնելու համար — մի դիրք՝ երբ ամբողջ Եւրոպան դողում էր օսմանեան բանակներից — նրանք միակ միջոցը համարում էին այդ Սահմանադրութիւնը ։

Երբ այդպիսով որ և է յաջողութիւն չգտան, այնուհետև սկսեցին քննադատութեան առնել Սուլթան Համիտի "անձնական" կառավարութեան եղանակը և պատահած ներքին խռովութիւնների, զեղծումների ու Թիւրքիայի ներկայ աննորմալ կացութեան պատասխանատու միայն նրան բռնել ։

Տեսնելով Սուլթանի յամառութիւնը և իրենց դէմ յարուցած հալածանքները, „Երիտասարդ"ները այնուհետև սկսեցին պաշտպանել Սուլթան Համիտի գահընկէցութեան գաղափարը։ Մի ժամանակ նրանք շատ մեծ յոյս դրեցին Եգիպտոսի Խտիվի վրան, յուսալով որ նա իրենց կօգնէր, բայց այդ կողմից յուսախաբ եղան ։

Նրանք մատուցանում էին յիշատակագրեր և՛ եւրոպական պետութիւններին, խնդրելով որ դիւանագիտական ճանապարհով հաւաքական ճնշում գործ դնեն Սուլթանի վրան՝ „Պարլամէնտ"ը վերահաստատելու ։ Այստեղ էլ նրանք Թիւրքիայի ներկայ դրութեան միակ պատասխանատու Սուլթան Համիտի անձնական կառավարութեան եղանակն էին համարում ։

„Երիտասարդ"ների մեծ մասը բարեշրջականներ (évolutionniste) լինելով և հետևողներ Օգիւստ Կօնտի փիլիսոփայութեան, իրենց դաւանած ընդհանուր փիլիսոփայութիւնն այն էր, որ էվօլիւցիայից պէտք էր սպասել Օսմանեան կայսրութեան մէջ արմատական փոփոխութեան առաջ գալը,

և այդ փոփոխութիւնը պիտի կատարուէր յօգուտ տիրող՝ օսման տարրի։ Եւ հէնց այդ տեսակէտով էլ դէմ էին յեղափոխական շարժումների, այդ միջոցը անօգուտ և վնասակար համարելով այն հիմունքով, որ կարող էր արտաքին միջամտութիւն լինել և խնդիրը վճռուել յօգուտ տիրուող՝ աւելի յառաջադէմ ժողովրդների, մինչդեռ Թուրք տարրը դեռ բաւականին յետամնաց էր։

“Ծերունի Թուրքեր”ից ո՛չ նուազ թափով նրանք պայքար մղեցին հայկական, մակեդոնական, կրէտական, արաբական, ալբանական շարժումների ու այդ շարժումներին արտայայտութիւն և ուղղութիւն տուող կուսակցութիւնների դէմ, ասելով որ այդ բոլորը վտանգում էին կայսրութեան ամբողջութեանը, միութեանը, անկախութեանը և կարող էին արտաքին միջամտութիւն հրաւիրել ու պետութիւնը անդամատել։

Բոլորը ի մի ամփոփելով՝ “Երիտասարդ”ների գործունէութիւնը հետեւեալ հիմունքներն էր կրում.

1. — Գահընկէցութիւն Սուլթան Համիտի։
2. — Պահպանութիւն Օսմանի դինաստիի, Սուլթանականութեան և Խալիֆայութեան։
3. — Հակառակիլ օտար պետութիւնների միջամտութեանը Թիւրքիայի ներքին գործերի մէջ, մանաւորապէս դէմ լինել նրանց միջամտութեանը՝ հայկական, մակեդոնական, կրէտական, արաբական և ալբանական շարժումների պատճառով։
4. — Ճանաչել ո՛չ հայկական և ո՛չ էլ մակեդոնական խնդիրներ։ Դէմ լինել, պայքարել բաղկացուցիչ ազգութիւնների շարժումներին՝ յանուն օսմանեան կայսրութեան միութեան և ամբողջականութեան։
5. — Պաշտպանել Թիւրքիայի ներկայ ընկերական, կրօնական և տնտեսական հաստատութիւնները՝ իրենց ամբողջութեան մէջ։
6. — Ներքին քաղաքականութեան տեսակէտից՝ պաշտպանել և իրականացնել օսմանականութեան գաղափարը՝ Թուրք նացիօնալիզմը՝ իր

բոլոր հ ե տ և ա ն ք ն ե ր ո վ. ընդունել քաղաքական բացարձակ կեդրոնացում. ժխտել ամէն տեսակ ապակեդրոնացում։

7. — Վերահաստատել Միդհատի Սահմանադրութիւնը, և իրենց հեռաւոր ու մօտաւոր իղձերի իրականացումը նրա մէջը տեսնել և նրանով առաջ երթալ։

8. — Արտաքին քաղաքականութեան տեսակէտից՝ պաշտպանել Ալժիրցիներին, Թունիսցիներին, Մարոկկօցիներին, Բուլղարիայի, Կրետէի, Կովկասի, Անդրկասպեան երկրների և Հնդկաստանի մէջ եղող մահմէդականներին՝ իրենց տիրապետող կառավարութիւնների դէմ։ Ամբողջ մահմէդական աշխարհը մի ընտանիքի զաւակ համարել և նրանց յոյսերի առանցքը դարձնել օսմանեան պետութիւնը, և այդ հիմունքով ջանալ սերտ յարաբերութիւններ մշակել մահմէդական անկախ և կիսանկախ տէրութիւնների միջև։

9. — Ծանօթացնել եւրոպացիներին իսլամութեան բարձր կողմերը և մահմէդական քաղաքակրթութիւնը։

Սա է եղած, իր գլխաւոր գծերի մէջ, այն գործունէութիւնը, որի շուրջը դարձել է "Երիտասարդ Թիւրքիա"ն՝ արտաասահմանի մէջ։

## VI

## “ԵՐԻՏԱՍԱՐԴ ԹԻՒՐՔԻԱՑ„Ի ՄԻՏՈՒՄՆԵՐԸ ԵՒ ՄԻԴՀԱՏԻ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆԸ

Բայց ինչո՞ւ "Երիտասարդ Թուրքեր"ի յղացումները ամենափոքր չափով իսկ արդիւնք չունեցան, բնաւ իրականութիւն չստացան, չնայելով որ աւելի քան կ է ս դ ա ր է, որ իրենք պայքարի են բռնուած տիրող բռնապետութեան հետ։ Կորով, աշխոյժ, երբեմն, ցոյց են տուել, այդ անուրանալի է, ոմանք բազմիցս պետական ամենաբարձր և պատասխանատու պաշտօններ էլ են վարել և քիչ չեն եղել

դէպքեր, երբ օսմանեան գահակալները լսել և հետևելու ակնյայտնի տրամադրութիւն են ցոյց տուել ու բացայայտօրէն թոյլ տուել որ այդ կուսակցութեան գաղափարների տածիչները փոքրիկ միջուկ էլ կազմեն իրենց գահի շուրջը։ Եւ բաւականին նպաստաւոր պայմանների ներքոյ, աւելի քան կէս դար մարտնչելուց յետոյ, "Երիտասարդ Թիւրքիա"ն այսօր, օրինական հողը կորցրած, ունեցած ազդեցութիւնից բոլորովին զրկուած, ուժասպառ, ջլատուած մի շատ աննշմարելի, աղօտ տեղ է բռնում համաշխարհային պայքարողների ընդարձակ շարքերի մէջ։ Դրա համար աչքի առաջ պէտք է ունենալ իրենց ընդհանուր միտումը։

Ապահովուած, յարատև, զերծ ներքին խռովութիւններից համարելը միայն այն պետութիւնը, որի ընդարձակութեան վրայ բնակողները բոլորն էլ կլինեն միաձոյլ, շահակից, ենթակայ միևնոյն հաստատութիւնների, ստորադասուած միևնոյն օրէնքների, վարչական կարգ ու կանոնի. իր ֆիզիքական ոյժի գերակշռութիւնից օգտուելով՝ ինքնուրոյնութեան առանձին պայմաններ ունեցող ցեղերի և ազգերի գոյութեան նեցուկները յափշտակել, աստիճանաբար տկարացնել, մինչև որ սրանք ժամանակի ընթացքում իսպառ մոռանան իրենց անցեալը և անհատական ամբողջութեան գիտակցութիւնը ու տարիներ անցնելուց յետոյ, շնորհիւ տիրողի ձեռք առած միջոցների, լինեն անգիտակից բեկորներ, տիրող գահի շուրջը դառնան ու, իբրև տնտեսական արտադրող գործիներ, այս վերջինիս գոյութեան յարատևութիւնը ու զօրեղացումը իրենց հանրական նպատակը դարձնեն,— դա շատ հին գաղափար է և բոլորովին հակառակ ներկայ քաղաքակրթութեան։ Աղէքսանդր Մեծը այդ հսկայական գաղափարի իրականացման մէջն էր որոնում իր աշխարհատարած կայսրութեան ապահովութեան կռուանները։ Այդ միևնոյն գաղափարին է առաջնորդուել Ֆրանսիան, դեռ տասնևմէկերորդ դարից։ Պրուսական արքայական տան ղեկավարիչ գիծը նոյն այդ գաղափարն է եղել, սկսած տասնևվեցերորդ դարից։ Ամէն ինչ հաւասարապէս տարրալուծող, ստեղծող, առաջ բերող պետական այդ գաղափարն են քարոզել Հեգելը, Բլունչլին՝ իբրև արտայայտիչ պրուսական ամենակարող

պետական գաղափարի. Նոյն այդ մտքերով են տոգորուած այժմս էլ Համասլաւութեան և Համագերմանականութեան զառանցող ռահվիրաները և վերջապէս այդ միտումներով է շարունակ առաջնորդուել բռնապետական Ռուսիան իր օրէնսդրական և վարչական բոլոր արտայայտութիւնների մէջ։

— Այդպիսի մի հսկայական ծրագիր գործադրելու համար Թիւրքիան շա՛տ խարխուլ է, այդ տեսակ տիտանական մի շէնք կառուցանելու համար՝ օսմանեան պետութիւնը ամենաանհրաժեշտ տարրերը իսկ չունի և այդպիսի ընդարձակ, լայնատարր միտք իրագործելու համար՝ "Երիտասարդ Թուրքեր"ը շա՛տ ուշ են ասպարէզ իջել։ Այդ տեսակ մի միտք՝ թէև շատ սահմանափակ շրջանի մէջ, արդարև գործադրեց Օսմանը, ցեղակից, այլասեռ տարրերից մի ամբողջութիւն կազմելով, բայց դա հինգ դար առաջ էր և այսօրուայ պայմանները ա՛յնքան փոխուած են որ "Երիտասարդ Թուրքեր"ը հիմա այդպիսի մտածմունքներ առաջ բերելով՝ համաշխարհային ծաղր ու ծանակի առարկայ են դառնում միայն, և իրաւամբ։

Եթէ "Երիտասարդ Թուրքեր"ը իրենց յղացած գաղափարները չկարողացան գործադրել և ամենափոքր չափով օգտակար դառնալ իրենց երկրին — այդ միայն նրա համար, որ իրենց մտածմունքի հիմունքը սխալ էր։ Իբրև հետևող, փոխ առնողներ, թիւրք կարծեցեալ ազատամիտները գործեցին նոյն սխալները, ինչ որ իրենց ուսուցիչները։

Եւրոպական ազատամիտների հին դպրոցի ներկայացուցիչները երբ տեսնում էին քաղաքական, տնտեսական մի հաստատութիւն, օրէնսդրական մի կարգադրութիւն որ յաջող և բարեբար կերպով էր գործել մի երկրի մէջ, իբրև պարզ իդէալիստներ, առանց ամենանուազ չափով ուշադրութեան առնելու միջավայրերի տարբերութիւնը, ժամանակի տևողութիւնը և այն բոլոր ազդակները, որոնք յառաջացրել էին խնդրի առարկայ եղող հաստատութիւնը — մտածում և յանձնարարում էին նոյնը միանգամից փոխադրել իրենց ցանկացած երկիրը, նախապէս համոզուած լինելով, որ փոխառնովի հաստատութիւնը, ինչպէս մի մեքենայ, նոյնքան յաջողութեամբ պիտի գործէր երկրորդ միջավայրում, ինչքան որ առաջին։ Եւ որովհետև պատմութիւնը, գիտու-

թիւնը, յաճախակի կրկնուած փորձերը ցոյց տուին այդ տեսութեան հիմնովին սխալ լինելը, ուստի ուսուցիչների սխալելովը, սխալուեցան և՛ նրանց բոլոր հետևողները — այս պարագայիս, մասնաւորապէս, "Երիտասարդ Թուրքեր"ը։

Եթէ տարբեր անցեալ, տարբեր լեզու ու սովորութիւն ունեցող մի քանի ցեղեր շաղախուելով յառաջացրին մի ամբողջական Ֆրանսիա, Ֆրանսիական մի ընդհանուր ազգութիւն — այդ նրա համար՝ որ այնտեղ կար մի Ile de France։ Քաղաքական իշխանութիւնը, օրէնքի ցանցերը դեռ հերիք չէին, որ տարասեռ մասունքներից ընդհանրական գիտակցութիւն, միաձոյլ համայնութիւն յառաջանար, դրա համար անհրաժեշտ էին մտաւոր, նիւթական և բարոյական ամուր կապեր, և Ile de France-ից բղխած լուսաւորութեան ու քաղաքակրթութեան ճառագայթները, նրա ծոցից յառաջացած մտաւոր խմորը, տարիների ընթացքում, արդարև, այնպէս թրեց, զանգեց զանազան ծագում ու անցեալ ունեցող տարրերը, որ Բասքը, Բրետոնը և այլն, կորցրեց իր ցեղային անհատականութեան գիտակցութիւնը ու ինքն իրան սկսեց նկատել մի մասը Ֆրանսիական ազգի ամբողջութեան։

Ունէ՞ր Թիւրքիան իր Ile de France-ը — Ֆիզիքական ոյժ, այո՛, և միայն բացառապէս սրա վրայ յենուելովն է, որ օսմանցի տիրողը կարող եղաւ տարբեր ցեղերի մէջ իր տիրապետողի դոյութիւնը պահպանել։ Բայց ֆիզիքապէս այդ տիրողը, մտաւորապէս, բարոյապէս ու տնտեսապէս չէ՞ր տիրապետուած տիրուողներից։

Սանձարձակ բռնապետութեան, յափշտակութեան, կողոպուտի ղժոխային կեդրոն դարձած Պօլիսը և սրա մէջ հաստատուած Գահը բարոյական ի՞նչ զօրեղ կապերով էր իր հետ կապել Հային, Յոյնին, Բուլղարին . . . որ սրանք մոռանային իրենց անցեալը, վանէին մէջներից ազգային անհատական գիտակցութեան գաղափարը և դառնային գիտակից Օ ս մ ա ն ց ի ն ե ր։ Գաղափարների համայնութեան, զգացումների ամբողջական համանմանութեան ի՞նչ ազդակներ էր տուել օսմանեան կեանքը։ Թուրք լեզուն, գրականութիւնը այդ ազգերին մատակարարե՞լ էր մի որ և է մտաւոր սնունդ, բարոյական կապ, որ աւելի բարձր ու զօրեղ,

*աւելի վսեմ ու վճիտ լինէր, քան իրենց սեպհականը։ Մտաւոր արտայայտութեան ո՞ր ճիւղի մէջ Հայը, Յոյնը ... բացարձակապէս բարձր և տիրող չեն եղել Թիւրքերից։ — Թառամած վարդ, սիրատարփ սոխակ, Թարշամելու համար վերջալոյսի վերջին ճառագայթին սպասող ծաղիկ, կոյս, տարփական կեանք ... ահա իր քերթողների և բանաստեղծների երգածների գլխաւոր և տիրապետող առարկան։ Իսկ այդ բոլորը կարո՞ղ էին մի որ և է չափով համեմատութեան մէջ մտնել այդ ազգերի մտաւոր արտադրութեան անցեալ ու ներկայ հրաշակերտների հետ, որ դարերի ընթացքում իրենց ուրոյն ազդեցութիւնն են դրոշմել սերունդների վրայ։ Այդ ազգերի բեղմնաւոր անցեալի փոխարէն Թուրքը չունէ՞ր մի անջրդի անապատ։ Բայց այդ բոլորը տիրող տարրերը տեսնում և շօշափում էին իրենց հանապազօրեայ կեանքով։*

*Պրուսիայի կամ Ռուսիայի պատմութիւնը առաջնորդող գիծ ընդունելը աւելի քան զառանցանք կարող էր լինել նոյն իսկ "Երիտասարդ"ների համար։ Դրա համար նրանք պատրաստուած տարրեր չունէին և ահագին կերպով յետ էին մնացել ժամանակի ընթացքից։*

*Իսկ գալով Միդհատի սահմանադրութեանը, եթէ չընդունենք որ դա դիւանագիտական հրապարակային մի խաղ էր, նշանակուած 1876-ի դէպքերի առաջը առնելու, այլ պետական մի հաստատութիւն, որի հեղինակները նպատակ են ունեցել այդ միջոցով հաստատուն մի կռուանի վրայ դնել Թիւրքիայի գոյութիւնը, ապահովել սրա բարգաւաճումը և ազատել երկիրը ներքին ու արտաքին աղէտներից — ապա, առանց մանրամասնութեանց մէջ մտնելու, ամենայն իրաւամբ կարելի է ասել, որ այդ հաստատութիւնը շա՛տ հեռու և անզօր է այդպիսի մի նպատակի համար։ Միդհատի սահմանադրութիւնը իր էութեամբ իրական և ո՛չ մի ծառայութիւն կարող է մատուցանել օսմանեան պետութեան, եթէ մի օր վերահաստատուի էլ և անարգել կերպով գործադրութեան մէջ մտնի։ "Երիտասարդներ"ը որ Համիտի և դիւանագէտների փէշերից կախ ընկնելով՝ իրենց գործունէութեան միակ նպատակն են անում այդ*

"Պարլամենտ"ի վերաբացումը — դրանով ոչինչ չեն գործած լինում իրենց երկրի ապագայի տեսակէտից, և չարաչար սխալւում են, աւելի քան իրենց նախորդները, երբ կարծում են թէ դա միակ զօրաւոր սպեղանին է Թիւրքիան բուժելու, թէ՛ ներքին և թէ արտաքին հիւանդութիւններից:

Հասկանում ենք թէ "Երիտասարդ Թուրքեր"ը իրենց միամտութեան մէջ ինչո՛ւ համար առանձին կարևորութիւն ու նշանակութիւն են տալիս "Թիւրքիայի գոյութիւնը վերջնական կորստից ապահովող այդ գործողութեան"ը:

Բայց այդ այդպէ՞ս է:

Միդհատի Սահմանադրութիւնը առանձնապէս սիրելի է "Երիտասարդներ"ին, որովհետև նա, իբրև թէ, կարող պիտի լինի վերջ տալ եւրոպական ազգերի միջամտութեանը Թիւրքիայի ներքին գործերում և ջնջել այն բոլոր capitulation-ները և մասնաւոր իրաւունքները, որոնք Թիւրքիան եւրոպացու ստացուածքն են դարձրել:

Բայց այդպիսի մի հսկայական ծրագիր գործադրելու համար ընդհանուր ցանկութիւնները, բառերը դեռ հերիք չեն: Հարկաւոր են յարատև պատճառներ, զօրեղ ազդակներ, որ եւրոպական պետութիւնների դարերի ընթացքում ձեռք բերած արդիւնքները այդպէս դիւրութեամբ մէջտեղից վերցուէին: Արդիւնքը ջնջելու համար, հարկաւոր է նախ ջնջել նրա յառաջացնող պատճառը, պայմանները: Արդ, վերացե՞լ են, կամ այդ Սահմանադրութիւնը ի՞նչպէս միանգամից պիտի վերացնէր այն բոլոր պատճառները, որոնք առիթ են տուել և առաջ բերել capitulation-ները: Եթէ այդ capitulation-ները դարերի ընթացքում իւրաքանչիւր պետութեան դէպի Թիւրքիան ունեցած իրաւունքի սահմանն են կազմում — ապա մի պետութիւն իր դարևոր իրաւունքները այնքան էլ հեշտութեամբ ձեռքից բաց չի թողնիլ, որքան որ բարեմտաբար ենթադրում են "Երիտասարդները": Ճահագրգռուող պետութիւնների միացեալ ոյժին համապատասխան ոյժ ունենալու էր Թիւրքիան այդպիսի մի իղձ իրականացնելու համար: Իսկ այդ զօրութիւնը ունենալուց առաջ՝ դեռ հարկաւոր պիտի լինէր որ օսմանեան պետութիւնը ո՛չ

միայն արդեամբ մտած լինէր եւրոպական քաղաքակրթութեան շաւղին մէջ, այլ որ ինքը արդէն այդ քաղաքակրթութեան տարրերից մէկը դարձած լինէր։ Բայց այդ բոլորը այս րոպէիս երազ չէ՞ "Երիտասարդներ"ի համար, եթէ մի քիչ ճանաչում են իրականութիւնը։ Իսկ մի փոքր հեռուն երթալով՝ յարակարծիք չէ, եթէ ասենք, որ capitulation-ները և Թիւրքիայի մէջ Եւրոպացիների ունեցած ձեռնարկները ու նրանց դրած դրամագլուխներն են եղել ամենազօրաւոր պատճառը, որ մինչև ցարդ Թիւրքիան գոյութիւն ունի, եթէ ո՛չ նա արդէն շատ վաղուց զօրաւորին կուլ երթացած կլինէր. միւս կողմից, նոյն այդ capitulation-ները և եւրոպական պետութեանց տնտեսական ու քաղաքական հակամարտ ձեռնարկները ու շահերն են՝ որ պետութեանց մրցման ու նախանձի յարատև սնունդ դառնալով՝ կազմում են գլխաւոր առանցքը թրքական դիւանագիտութեան՝ Օսմանեան պետութեան հոգեվարքային գոյութիւնը շարունակել կարողանալու համար։

Այդ Սահմանադրութիւնը մասնաւորապէս ցանկալի է "Երիտասարդներ"ին, զի նրանք պարզմտօրէն հաւատացած են, որ այդ միջոցով կարող պիտի լինեն բոլոր Թիւրքիան մի ամբողջական ծածկոցի տակ առնելու և՝ աստիճանաբար՝ մի ազգայնութեան վերածելու։ Դրանով նրանք պիտի անհետացնէին Թիւրքիան կազմող ազգերի միջից ամէն խտրութիւն, ջնջէին փոխադարձ թշնամութիւն, հակառակութիւն, ապստամբութիւն և անջատման առաջ բերող ամէն պատճառներ։ Եթէ մի ցեղ, մի ժողովուրդ ունենար անբաւականութեան որ և է դրդապատճառ, նա այլևս չպիտի դիմէր զէնքի կամ եւրոպական այս ու այն պետութեանը կամ նրանց ամբողջութեան միջամտութեանը, — ո՛չ, դա ազգային, պետական դաւաճանութիւն կլինէր, այլ Օսմանեան վեհագոյն ատեանին՝ Պարլամէնտին, ուր բազմած էին իր ներկայացուցիչները։ Ուրեմն թղթի մի հարուածով "Երիտասարդներ"ը ցանկանում էին իրագործուած տեսնել այն, ինչ որ անկարող եղան անել իրենց աշխարհակալների սուրը և զանազան ժամանակներում կատարուած ահռելի կոտորածները։

«Ծերունիներ»ը մտածում էին խռովարար ժողովուրդներին ուղղութեան բերել սրով, իսկ «Երիտասարդներ»ը՝ պ ա ր լ ա մ ե ն տ ա կ ա ն  մ ե ծ ա մ ա ս ն ո ւ թ ե ա մ բ, և Միդհատի Սահմանադրութիւնը այդ միջոցը իրենց տալիս էր։

— Խորհրդարաններից առաջինը՝ Պատգամաւորական ժողովը պիտի ընտրուէր Օ ս մ ա ն ե ա ն  ա զ գ ի ց, իսկ ընտրելու և ընտրուելու իրաւունքները ընտրողական այնպիսի սակի (cens) վրայ էին դրուել, քաղաքացիական այնպիսի պայմաններով էր շրջանակուել, որ ո՛չ միայն մահմէդականները, մանաւորապէս Թուրքերը, բացարձակապէս ջախջախիչ մեծամասնութիւն պիտի կազմէին, այլ որ այդ մեծամասնութիւնը բաղկացած պիտի լինէր պետական զանազան պաշտօնեաներից՝ երկիրը կուփող, ժողովուրդը հարստահարող բէկերից, աղաներից, փաշաներից և նմանօրինակ մակաբոյծներից։ Ուրիշ ազգութիւններ, առանձնապէս քրիստոնեաները, հազիւ նրա մէջ է՛ն շատը 5-10 պատգամաւոր ունենային։ Արդ, բողոքող, դժգոհ ժողովրդների ներկայացուցիչները ո՛րքան կարող պիտի լինէին իրենց բողոքարկու ազգակիցներին պաշտպանելու 5-10 ձայնով ընդդէմ 240ի՝ ազգային-անհատական խնդիրների տեսակէտից։ Բնականաբար մեծամասնութեան իրաւունքը, նրա արտայայտած կամքը տիրապետող, անվիճելի պիտի լինէր, զի այդ էր ներկայ քաղաքակրթութեան տուած պայմանները՝ համանման պարագաներում։ Իսկ այնուհետև դժգոհները և իրենց ներկայացուցիչները ո՛չ ապստամբելու և ո՛չ էլ օտար պետութիւններին դիմելու իրաւունք այլևս պիտի ունենային, — նրանց պիտի մնար միայն կամայ ակամայ հնազանդել մեծամասնութեան՝ իրենց հակառակորդների՝ վճռին ու նրա որոշմանը հետևիլ։

Այդ դեռ բաւական հատու և ամէն ինչ երաշխաւորող զէնք չէր երևում սահմանադրականներին։ Ուրիշ ազգութիւնների պատգամաւորներից մին, օժտուած լինելով Կիկերոնեան ճարտասանութեամբ, Կատոնի իմաստութեամբ ու Ողիսևսի խորամանկութեամբ՝ գուցէ կարող լինէր մեծամասնութիւնը մի կերպ իր յետևից քարշ տալ և փոքրամասնութեան կամքը յաղթանակել տալ, հ ա կ ա ռ ա կ  օ ս մ ա ն-

եան ազգի մնայուն շահերին, ուստի հարկաւոր էր մի քիչ էլ զգոյշ լինել։

Եւ ահա սահմանադրականները գահակալող սուլթանների բացարձակ կամքին էին թողնում կազմել մի Ծերակոյտ (Sénat), բաղկացած 300 անդամից։ Անշուշտ, դժուար չէ գուշակել այն ծառայութիւնները և գործերը, որ նրանք պաշտօն պիտի ունենային կատարելու։ Երբ անդամների յատկութիւնները ու նրանց արժանաւորութիւնները տեսնողը, գնահատողը և ընտրողը Սուլթանները պիտի լինեն — ապա դիւրին է կանխապէս հասկանալ այդպիսի մի մարմնի բաղկացութիւնը, ստանձնելիք պետական գործերը ու կատարելիք դերը։ Մի անգամ երբ այդ մարմինը ամբողջապէս պիտի կազմուի սուլթանների բացարձակ կամքի որոշմամբ, արդ, ո՞ր տրամաբանութեամբ, ո՞ր ազգերի համանման օրէնքով չի կարելի եզրակացնել, որ ընտրուած ծերակուտականները չեն լինիլ սուլթանների բացարձակ հլու, հնազանդ, հաճոյակատար ստրուկները, հետևաբար գահակալի իղձերի թարգմանը ու արտայայտիչը և ո՛չ թէ ժողովրդի, որի անունով իրենք պիտի խօսեն, որոշում կայացնեն։ Իրենց գոյութիւնը բռնապետին պարտական լինելով՝ նրանք բռնապետի էլ գործիքը պիտի լինէին դէպի այն ժողովուրդը, որից իրենք ո՛չ մի կախումն, որի հետ իրենք ո՛չ մի առնչութիւն ունէին։

Օսմանեան այդ եզակի Ծերակոյտի մէջ հայկական ծագում ունեցող օսմանցիները — չէ՞ որ ամէնքի ազգայնութիւնը օսմանեան պիտի լինի — ամենայն հաւանականութեամբ կունենան Տատեաններ, Նուրեաններ, Նորատունկեաններ — Նստած Ջէվդէտ, Սայիդ, Մահմուտ Ջալալէդդին փաշաների կողքին. Աշըգեաններ, Օրմանեաններ, Մամբրէներ — բազմած Իսլէմաների, Միւֆտիների և Շէյխ-իւլ-Իսլամների կշտին։ Օսմանեան պետութիւնը ո՛չ թէ 300, այլ 3000 այդպիսի արժանաւո՛ր մեծամեծներ գտնելու շտեմարանը ունի։ Այդ կողմից ո՛չ մի պետութիւն նրա հարստութեանը չի հասնիլ։

Բայց դրանով ի՞նչ. “Երիտասարդ” սահմանադրականները դրանով իրենց ո՞ր նպատակին՝ մազաչափ անգամ հասած կլինեն։

Բայց չէ, դեռ կայ վտանգ, որովհետեւ մի օր այնպիսի մի հայ պատգամաւոր կարող է երեւիլ, որ Կիկերոն, Կատոն, Ոդիսեւս իր մէջը ամփոփելով հանդերձ, ունենար էլ Աշըրգեանների, Նուրեանների էլ հոգին, նրանց նենգամտութիւնը և յանկարծ հոգեփոխութեան մաքուր օղակներից անցնելով՝ դառնար իր ազգի շահերի ջերմ պաշտպանը և 299 իր պաշտօնակիցների հաւանութիւնը ստանար Ստորին Խորհրդարանի իր հայ ազգակցի առաջ բերած որոշումը շարունակելու, որպէսզի օրէնքի ոյժ ստանար։

"Երիտասարդներ"ը այդ պատահականութիւնն էլ են աչքի առաջ ունեցել և նրա մասին վաղօրօք հոգացել, — դեռ կար Սուլթանների ամենակարող կամքը։

Զարմանալի տրամաբանութեամբ են օժտուած եղել "Երիտասարդ Թիւրքիայ"ի պարագլուխները։ Երկրի մէջ եղած ամէն չարիքների նախապատճառը Սուլթանը ու սրա կառավարութեան բացարձակ միապետութիւնը համարելով հանդերձ, իրենց յղացած նորօրինակ Սահմանադրութեան մէջ բնաւ չեն խորհած մի որ և է հակակշիռ տրամադրութիւն մէջ բերելու, որ կարող լինէր՝ շատ ու քիչ, իրականօրէն, օսմանեան գահակալների կամքի բացարձակութիւնը արգիլելու իրաւունքը ունենար։

Միապետական սահմանադրական կառավարութեան եղանակ ունեցող ամէն երկիր իր Խորհրդարաններով միակ նպատակ է ունեցել հակակշռել, չէզոքացնել և, ի հարկին, բոլորովին անզօրութեան վերածել երկրի Պետի կամքը և նրա տեղ դնել՝ Խորհրդարանների միջոցով ներկայացած՝ ժողովրդի կա՛մ հակակշիռ, կա՛մ գերակշիռ և կա՛մ ամենակարող ձայնը։ Եւ այդպիսի իրաւունք, կարողութիւն ձեռք բերելու համար, այդ երկիրները գետերի նման են հոսեցրել իրենց լաւագոյն զաւակների արիւնը։

Իսկ թէ ինչո՞ւ "Երիտասարդ" սահմանադրականները այդպիսի մի տրամադրութիւն իրենց յօդուածների շարքերի մէջ մտցնելուց հեռու են մնացել — այդ պիտի բացատրել կա՛մ տգիտութեամբ, կա՛մ նենգամտութեամբ, որ աւելի հաւանական է, և կամ բարեմտօրէն ենթադրելով թէ օսմանեան գահակալները միշտ եղել են և շարունակ էլ պիտի

լինեն գործավարութ հայրեր, իսկ հպատակները՝ հարազատ զաւակներ, — և այդ բացատրութիւններից որը որ ընդունուի, դարձեալ "Երիտասարդներ"ը իրենց առաջը եղած չարաղէտ հակասութիւններից չեն կարող ազատուիլ։

Գանգատուել Սուլթաններից, երկրի կորստեան պատճառ նրանց համարել և դրա համար էլ ժողովրդի ներկայացուցչութիւնը խնդրել, իսկ սրան միայն անզօր խորհրդատուի (consultatif) պաշտօն տալ և ուրիշ ոչինչ — դա մտքի աւելի քան անկանոնութիւն է։ Պատգամաւորական Ժողով, Ծերակոյտ ի՛նչ օրէնք, ի՛նչ որոշում որ ուզեն՝ կարող են ընդունել, բայց նրանց քուէարկած օրէնքները, տուած որոշումները՝ գործադրութեան մէջ մտնելու համար՝ բացարձակապէս կախում ունեն գահակալի կամքից. սա կարող է ընդունել, կարող է և՛ մերժել, նայելով իր ինքնիշխան կամքին, որ միակ, ամենակարող և ծայրագոյն ատեանն է, և որի որոշումը վերջնականն է։ Եթէ հայ ամենակարող պատգամաւորի առաջարկը անցաւ Խորհրդարաններից, դեռ սա իր առաջ ունի ամէնքի Վեհապետը, բացարձակ Տէրը։ Իսկ եթէ սա չհամաձայնի՞։ — Այն ժամանակ, երևի, իր խօսքը յառաջ տանելու և օրէնքի ոյժ տալու համար, նա կարիք պիտի ունենայ զինուորական մի այնպիսի ոյժի, որ գերակշիռ լինէր սուլթանների բանակներից։ Այլապէս իր առաջարկը, օրինագիծը, դատապարտուած է յաւիտենական առաջարկ, յաւիտենական օրինագիծ մնալու։

Գուցէ մեզ պատասխանեն "Երիտասարդներ"ը, որ վերևից շնորհուածը, տիրապետող Տան տուածը այդքան էլ հազիւ լինի։ — Համաձայն։ — Բայց դրանով ի՞նչ շահ, ի՞նչ օգուտ, թէ՛ բուն Թիւրքիային և թէ՛ նրա բաղկացուցիչ ազգութիւններին։ Մի հաստատութիւն միայն այն ժամանակ կարող է օգտակար լինել, երբ իր գոյութեան առանձին իրաւունքը, կատարելիք մասնաւոր պաշտօնը ունի։

Եւ այս բոլորից յետոյ կատակերգութիւն չէ՞ աւելացնել "Նախարարական պատասխանատուութիւն"։ Պատասխանատուութիւն որի՞ն։ — Ա՛յն Խորհրդարաններին, որոնց ձայնը բացարձակապէս և ո՛չ մի նշանակութիւն ունի տիրող բռնապետի առաջ։

Այժմ հասկանալի՞ է այն դառն հեգնութիւնը, այն կասկածոտ ժպիտը, որ արձակել և դեռ շարունակում են արձակել եւրոպական պետութեանց այն բոլոր ներկայացուցիչները, որոնք առանձին պատասխանատուութիւն և իրաւունք ունեն դէպի այն ամէնը, ինչ որ կատարւում է Թիւրքիայում՝ երբ խնդիրը գալիս է Միդհատի Սահմանադրութեանը։

Կա՞յ մի պատճառ, որ դարերի ընթացքում ճնշուած, հարստահարուած և, իրեւի բնական ընթացքով, շարժման մէջ մտնող ազգերի պայքարողների ժպիտը ևս արգիլէր, երբ լսւում է Միդհատեան Պարլամէնտի անունը։ — Երիտասարդնե՞րը վերջապէս պիտի համոզուեն, որ երբ իրենց հայրերի եաթաղանը կատարելապէս անկարող եղաւ անհետացնել, ձուլել, լռել տալ հպատակ ազգերին, ապա նո՛յն անկարողութեան, նո՛յն անընդունակութեան պիտի դատապարտուի և՛ իրենց գծագրած պարլամենտական մեծամասնութիւնը։ "Երիտասարդ Թիւրքիա"ն պիտի մտածէր, աշխատէր վերացնել, ներկայ քաղաքակըրթութեան մատակարարած միջոցներով, այն բոլոր պատճառները, որոնք առիթ և միանգամայն իրաւունք էին տալիս հպատակ ազգերին դժգոհելու, ապստամբելու և ապա իրենց գոյութիւնը բոլորովին անջատել ձգտելու օսմանեան պետութիւնից։ Ահա՛ թէ ինչ պիտի լինէր իրենց յղացումների հիմունքը, եթէ իրօք ցանկանում էին իրենց երկրին օգտակար լինել, նրա յարատեւութիւնը ամրապնդել, և ո՛չ թէ զանազան հնարիմացութիւններով իրենց հայրերի բռնութիւնը պարլամէնտական մեծամասնութեան քօղի տակ երևան բերելու։ Եւ մի՞թէ հասկանալի չէ, որ օսմանեան բանակների շարքերից ճեղքող, անցնող և իրենց ձայնը լսեցնել տուող Ազգերը, նոյնքան ընդունակ և կարող կլինեն իրենց բողոքի, իրենց իրաւունքի ձայնը լսեցնել տալ, անցնելով և՛ պարլամէնտական մեծամասնութեան պատնէշից, որով նորից իրերի դրութիւնը կլինի նոյնը, ինչ որ առաջ, և "Երիտասարդներ"ը բոլորովին ի զուր աշխատած կլինեն ու առաջին անգամ իրենք հիասթափուած, երբ իրերի պահանջին միանգամայն անհամապա-

տասխան այդ կարկատնած Սահմանադրութիւնը մի օր գործադրութեան մէջ մտնէր։

Եթէ "Երիտասարդ Թուրքեր"ը ցանկանում են որոշեալ բարերար դեր խաղալ իրենց պատմութեան մէջ, եթէ իրօք մտածում են օգտակար լինել իրենց երկրին և նախանձախնդիր՝ նրա գոյութեան հիմունքները ամրապնդելուն, ապա նախ պիտի աշխատեն աւելի՛ ողջմտօրէն հետազօտելու, աւելի՛ լրջօրէն դնահատելու, ի մօտոյ ճանաչելու իրականութիւնը՝ օսմանեան երկիրը, նրա բաղկացուցիչ ազգութիւնները։ Այդ անհրաժեշտ պայմանները կատարելուց յետոյ է միայն՝ իրականութեան մատակարարած միակ հողը իրենց ռազմագիծ ընդունելով՝ որ պիտի ջանան կազմակերպուել իբրև պայքարող քաղաքական մարմին ու իրենց նպատակ անեն տապալել, յեղափոխել տիրող հինցած, փտած պայմանները ու նրանց տեղը դնեն իրերի իսկական պահանջներին ամենայնիւ համապատասխան այնպիսի նոր հաստատութիւններ, նոր կարգեր, որից հաւասարապէս կարող լինեն օգտուել թէ՛ բաղկացուցիչ պայքարող ազգութիւնները և թէ՛ ամբողջ Թիւրքիան՝ առանց ցեղի, կրօնի և դասակարգի խտրութեան։

## VII

## "ԵՐԻՏԱՍԱՐԴ ԹԻՒՐՔԻԱՅ"Ի ՊԱՏՄԱԿԱՆ ՍԽԱԼՆԵՐԸ

Պատմական անուրանալի փաստ է, որ "Երիտասարդ Թիւրքիան" աւելի քան կէս դար իր ունեցած գրական և քաղաքական շարժումներով՝ ցանկացել է հին, խարխլած, կործանուելու վերահաս վտանգի մէջ գտնուող Թիւրքիայի տեղ տեսնել մի "Երիտասարդ"՝ վերածնուած, ներքին անդորրութիւն վայելող և անխուսափելի անկումից զերծ՝ զօրեղ և ամրապնդուած Թիւրքիա։

Բայց որ իր իղձերը, մղած բանակռիւները, պայքարները դրական և ո՛չ մի լուրջ հետեւանք են ունեցել մինչև այսօր — այդ էլ մի անհերքելի իրողութիւն է։ Իսկ թէ իր փայփայած նպատակին հասնելու համար դարձեալ նա յարած մնայ իր արդէն դաւանած և հրապարակ դրած սկզբունք-

ներին և միշտ շարունակէ հաւատարիմ մնալ մինչև ցարդ իր հետապնդած ուղեգծին, չշեղել նրանից — դա էլ անկասկած է, որ երբ և իցէ անկարող պիտի լինի որոշ, հաստատուն և օգտակար մի արդիւնք առաջ բերել։ Անցեալի մէջ մի քանի անգամ կրկնուած փորձերը, կատարուած իրողութիւնները, իրերի ընդունած ընթացքը և իրենց իսկ պայքարի պատմութիւնը՝ միացած Մեծ Պետութիւնների իրենց նկատմամբ ունեցած աննպաստ գաղափարին՝ այլևս անտարակուսելի են դարձնում մեր այս ասածի ճշմարտութիւնը։

Թէ որո՞նք եղան " Երիտասարդ Թիւրքիայ "ի պատմական սխալները, — այդ մասին ի նկատի առնենք միայն գլխաւորները.

Մտաւորական, գաղափարական հոսանքների տեսակէտից՝ Թուրք ժողովրդի եթէ ո՛չ ամբողջութիւնը, գէթ նրա ջախջախիչ մեծամասնութիւնը, մինչև այսօր, գտնւում է զարգացման այն շրջանի մէջ, ինչ որ էին եւրոպական ազգութիւնները Միջին Դարերում։ Մեր խօսքը, անշուշտ, Թուրք այն շատ սահմանափակ միջուկի մասին չէ, որ ձգտում է ունենալ, արևմտեան ազդեցութեան ներքոյ՝ ազատուիլ շրջապատող մտաւոր կաշկանդումներից. մեր խօսքը այն մեծամասնութեան մասին է, որ հասարակ ժողովուրդ անունն է կրում և Փատիշահութեան ու Խալիֆութեան սիւնն է համարւում։ Արդ, այն ո՞ր դասակարգն է եղել, որ ամէնից աւելի ջանացել է Թիւրքիան և մասնաւորապէս Թուրք ժողովուրդը խաւարամտութեան ծածկոցի տակ պահել շարունակ և նրան կաշկանդել հին կեանքի մէջ, — կրօնական, կղերական, հոգևորական դասակարգը։ Սրա ազդեցութիւնը բացարձակ և տիրապետող է եղել Թուրք կեանքի բոլոր արտայայտութիւնների մէջ։ Եւ ահա հէնց խնդիրն էլ այն է, որ այդ դասակարգի անհակակշիռ ազդեցութիւնը տրամագծօրէն անհաշտելի է նորագոյն պետութեան գաղափարի հետ։ Թուրք կրօնականը, որպէս դասակարգ, դեռ իր թագաւորութեան մէջն է. նա իր ազդեցութիւնից ո՛չինչ ունի կորցրած։ Մոլլան, Ղադին, Շէյխ-իւլ-Իսլամը դեռ ոյժեր և շա՜տ զօրաւոր ոյժեր են. դեռ մի կողմ թողնենք Խալիֆութեան գաղափարը։

Արդ, ամէն երկրի երիտասարդներ, ասպարէզ մտած օրից, իրենց առաջին գործերից մէկն են արել այդ դասակարգի իւրացրած իրաւունքների, արտօնութիւնների և գաղափարաբանութեան դէմ կռուել, խորտակել նրա ազդեցութիւնը, մասնաւորապէս՝ քաղաքական, տնտեսական և ընկերային խնդիրների նկատմամբ: Ժողովուրդը դուրս բերել կրօնի և կրօնականի կապանքներից,—սա է եղել ն ո ր ա գ ո յ ն պ ե տ ո ւ թ ի ւ ն ստեղծել ձգտողների կռուի մի երեսը: Սակայն այդպէս չարեցին Թուրք "Երիտասարդ"ները. Նրանք մինչեւ վերջ ո՛չ միայն կրօնական դասակարգի դասակարգային իրաւունքներին, արտօնութիւններին, նրա գաղափարաբանութեանը չդիպան և որ և է քննադատութեան նիւթ չարեցին ու չաշխատեցին նրա ազդեցութիւնը նսեմացնել և վնասակարութիւնը երեւան դնել, որպէս արտօնեալ մի դասակարգ, այլ՝ ընդհակառակը՝ նրա գոյութեան և դասակարգային իրաւունքների պաշտպանութիւնը մինչև անգամ իրենց սկզբունքներից մէկը դարձրին—ինչ որ սխալ և մե՛ծ սխալ էր: Նորագոյն պետութիւն և կրօնական դասակարգի անհակակշռելի դիրք՝ դրանք իրարու խորտակող զօրութիւններ են: Թիւրքիան ե ր ի տ ա ս ա ր դ ա ց ն ե լ ձգտողները քաղաքակրթութեան այդ դասը չպէտք է մոռանային, երբ խօսում էին քաղաքակրթութեան անունով:

"Երիտասարդ Թիւրքիա"ն, սկզբից ի վեր, մի ուրիշ կարեւոր սխալ էլ արաց: Ո՞վ, ո՞ր դասակարգն է, որ կրօնականի հետ միացած շարունակ քանդել է Թուրք պետութեան և Թիւրքիայի մէջ ամփոփուող ժողովրդների կենսական ոյժը,—կալուածատէր, ֆէօդալ, ազնուական, աղայական դասակարգը: Եւ սակայն, "Երիտասարդ"ները որ և է ժամանակ, իրենց պատմութեան ամբողջ շրջանում, մի կծու խօսք անգամ չունեցան դրանց դէմ: Նոր պետութեան գաղափարը պաշտպանողը այդ դասակարգերի և նրանց ունեցած իրաւունքների դէմ էր, որ կռուի պիտի բռնուէր և իր սկզբունքներից մէկը պէտք է անէր նրանց արտօնութիւնների ոչնչացումը: Սակայն "Երիտասարդ Թուրքեր"ը ո՛չ միայն այդ չարեցին, ո՛չ միայն Թիւրքիայի ոյժերը սպառող և աքտաղրող դասակարգերի արիւնը ծծող այդ վամբիր դասա-

կարգի դէմ նրանք հակառակ խօսք չունեցան ասելու, այլ նրանց իրաւունքներին և ձեռք բերած դիրքին մազաչափ անգամ դիպչել չուզեցին։

Թուրք պետութեան ո ղ ն ա շ ա ր ը եղած է գիւղացին, երկրագործ դասակարգը։ Բայց "Երիտասարդ Թիւրքիա"ն ո՛չ միայն այդ դասակարգի իրաւունքները չպաշտպանեց, նրա կրած տառապանքներին արձագանք չտուեց, այլ նրա վիճակը բարելաւող մի բառ անգամ չդրեց իր ծրագրի մէջ. նոյնը և ընդհանուր աշխատաւոր, արհեստաւոր, գործաւոր դասակարգի վերաբերմամբ։ Սակայն իրողութիւնն է, որ այսօր, առանց աշխատաւոր և գիւղացի դասակարգերի՝ մի պետութիւն արմատապէս փոխել և նորադոյն հիմունքների վրայ դնելը անհնարին է. իսկ "Երիտասարդ"ները այդ գերազանցապէս նորոգիչ ազդակները ո՛չ միայն անտես առան, այլ նրանց ճանաչել ի՛սկ չուզեցին։ Սա էլ մի ուրիշ սխալ։

Իրական կեանքի արտայայտիչը լինել ձգտող և նոյն այդ կեանքի մէջ նոր գաղափարներ ներմուծել աշխատող մի մարմին դրական գործ կարող է յառաջացնել միայն այն ժամանակ, երբ կը կազմակերպուի որպէս քաղաքական կուսակցութիւն և յարատեւ շփում կունենայ ժողովրդի հետ։

"Երիտասարդ Թուրքեր"ը ո՛չ միայն չկազմակերպուեցան որպէս քաղաքական կուսակցութիւն, այս եզրի լայն առումը, ո՛չ միայն երկրի ամէն կողմերում իրենց ճիւղաւորումները չունեցան, այլ նրանք մի տեսակ ազնուապետական դիրք բռնելով՝ խուսափեցան բուն ժողովրդի մէջը մտնելուց և նրան կազմակերպելուց։ Իրենց գործունէութեան ամենամեծ շրջանակը եղաւ Պոլիսը և պաշտօնատարների միջավայրը. այդ շրջաններից նրանք դուրս չեկան ու դրա համար էլ խորթ դիրք ունեցան նո՛յն իսկ Թուրք ժողովրդի մէջ. դեռ մի կողմ թողնենք միւս բոլոր այլասեռ տարրերը, որոնք "Երիտասարդ"ներից օգտակար սպասելիք և յուսալիք ո՛չինչ չտեսան։ Եւ այստեղ էլ սխալը, մե՛ծ սխալը դարձեալ "Երիտասարդ"ների կողմն է։ Որովհետև բաղկացուցիչ ազգութիւնների ձգտումները և շարժումները ո՛չ միայն իրենք չաշխատեցին լիրապէս ճանաչել և ուսումնասիրել, ու նրանց արդար պահանջներին պաշտպան հանդիսանալ, այլ իրենք,

սկզբից ի վեր, մի տեսակ Նախապաշարեալ ընթացքի մէջ մտան և "Ծերունի"ներից ո՛չ պակաս թափով ջանացին դժգոհ ժողովրդների բողոքը և շարժումները խեղդել, նոյն իսկ ամենադատապարտելի միջոցներով։

Բայց մի՞թէ, իրաւ, բաղկացուցիչ ժողովրդների ձգտումները և պահանջները անիրաւացի էին և չունէին իրենց խորունկ պատճառները. մի՞թէ "Երիտասարդ"ները իրենց իրաւունք պիտի տային ա՛յնպիսի յետադիմական գաղափարների մէջ մտնելու, եթէ իրօք նրանք ճանչցած լինէին իրականութիւնը և փոխանակ ամբողջ Օսմանեան պետութեան մէջ միայն մի ա զ գ ու թ ե ա ն՝ Օ ս մ ա ն ա կ ա ն ու թ ե ա ն գաղափարին հետապնդելու, ջանային աւելի լայն հիմունքների վրայ դնել իրենց գործունէութիւնը՝ բաղկացուցիչ ազգութիւնների պատմա-անհատական իրաւունքը ճանաչել, ծրագրել նրանց համար էլ զարգացման և յառաջադիմութեան միջոցներ և այդ հիմունքներով ձգտել վերաշինել թրքական պետութիւնը։

Մի փոքր մանրամասնենք այդ խնդիրը, որ "Երիտասարդ"ների բոլոր սխալներից ամենամեծը եղաւ՝ սկզբից ի վեր։

Նայելով Թիւրքիայի վրայ՝ աշխարհագրական, քաղաքական տեսակէտից, աչքի առաջ բերելով նրա ամբողջութիւնը՝ իբրև պետութիւն անհատ, ուշադրութեան առնելով նրա ներքին բաղկացուցիչ մասունքները, ունեցած քաղաքական, տնտեսական, ընկերային վիճակը, մի խօսքով առնելով Թիւրքիան այնպէս, ինչպէս որ էր, հարց է՝ թէ արդեօք "Երիտասարդ Թիւրքիայ„ի ծագման օրերում կարելի չէ՞ր, հնարաւորութիւն չկա՞ր առաջ բերելու՝ համեմատաբար՝ ապահով, հաստատուն կռուանների վրայ դրուած, քաղաքական ներքին անդորրութիւն վայելող՝ վերակազմուած մի Թիւրքիա, որ պահպանէր իր ուրոյն գոյութիւնը՝ իբրև պետութիւն, ազատուէր վերջնական կործանումի մղձաւանջից, որքան որ դա անխուսափելի էր նկատւում ներքին խնդիրների տեսակէտից, և կարող լինէր իր ամբողջութիւնը կազմող ոյժերի վրայ յենուելով՝ արտաքին հարուածների, օտար կլանողների առաջը դիմադրաւելու։

Մեր պատասխանը դրական է, եթէ "Երիտասարդ Թուր-

ք"երը և Թիւրքիան վերաշինելու ձգտող ուժերը բոլորովին ա՛յլ ծրագրով և ուղղութեամբ երևան եկած և գործած լինէին, քան ինչ որ նրանք արեցին։ Եւ դրա համար էլ ասում ենք, այո՛, դեռ կար հնարաւորութիւն, կար միջոց, և բաւականին ապահով միջոցներ, Թիւրքիան կորստից ազատելու, նրան դնելու այնպիսի մի շաւղի մէջ, որ կարողանար աստիճանաբար յառաջադիմել, հետզհետէ բարդաւաճել, յարատևել իր գոյութիւնը՝ իբրև պետութիւն անհատ, որքան որ մի պետութիւն կարող էր յարատև նկատուիլ իր մէջ բովանդակուող ներքին բարդութիւնների տեսակէտից, և ապահովութիւն ունենար դիմադրելու դուրսից եկած քայքայող, տապալել սպառնացող ոյժերին։

Թիւրքիան, անկասկած, կարող էր վերակենդանանալ, ապրել, զի դրա համար նա ունէր բաւականաչափ տարրեր, անհրաժեշտ գործօններ, որոնցից, սակայն, հարկաւոր էր միայն իմաստնօրէն օգտուիլ և ընդհանուր գործունէութեան ու արդիւնաբերող շարժականութեան մէջ դնել, որպէսզի այդ նպատակին հանելը պարզ երազատեսութիւնից զուտ իրականութիւն դառնար։

Գաղափարների այս ընթացքի մէջ՝ առաջին հարցը որ ծագում է, այդ այն է՝ թէ արդեօք Թիւրքիայի բաղկացուցիչ ազգութիւնների ազգային գոյութեան և ինքնավարական ձգտումները տրամագծօրէն հակառա՞կ էին Թիւրքիայի գոյութեան խարիսխների ամրապնդուելուն։ Դժգոհ տարրերի, շարժականութեան մէջ մտնող օտարացեղ ժողովրդների և Թուրք պետութեան միայուն շահերի մէջ կա՞ր մի այնպիսի էական ներհակութիւն, որ անկարելի լինէր նրանց մի կերպ իրարու հետ հաշտեցնել՝ առանց մին միւսին ջնջելու։ Քաղաքական և ընկերային բարւոքումներ պահանջող, կեանքի և գոյքի ապահովութիւն ուզող, մարդկային տարրական իրաւունքների տէր լինել ցանկացող՝ նուաճուող, բայց զարթնող ազգութիւնները կարո՞ղ էին բնաջինջ լինելու չափ վնասակար տարր նկատուիլ վերակազմուելիք, երիտասարդանալիք Թիւրքիայի համար։

— Ո՛չ։

Եւ "Երիտասարդ"ների հէ՛նց ամենախոշոր սխալը դրա մէջը եղաւ։

Եթէ այդ հարցի նկատմամբ մեր օրերի "Երիտասարդներ"ը չդատապարտեցին իրենց նախորդների սխալները և նորից — մինչև այսօր էլ — տարակարծիքութեան մէջ են ընկնում, դա միայն մի ուրիշ նոր ապացոյց է պարզ իրականութիւնը իրենց չճանաչելուն, եղածը գնահատել չկարողանալուն և ջախջախիչ մի փաստ՝ մերձաւոր ապագայի մասին թափանցող ոգուց իրենց բոլորովին զուրկ լինելուն։

Ուրիշ խնդիր ։— Արդեօք դժգոհ, քաղաքական և ընկերային բարեկարգութիւններ ու իրենց ազգային անհատական գոյութիւնը երաշխաւորող՝ ինքնավարական հաստատութիւններ պահանջող քրիստոնեայ ժողովուրդները, այսպէս ասած՝ փրչուած, ուռեցրած, արհեստական երևոյթնե՞ր, կամ քաղաքական գործի՞ք էին որ և է մի պետութեան, որի պատմական ձգտումները, մնայուն շահերը հիմնովին հակառակ լինէին Թիւրքիայի գոյութեանը և վերածնութեանը, որպէսզի այդ հանգամանքը աչքի առաջ ունենալով՝ "Երիտասարդներ"ը կասկածոտ և բացարձակ թշնամական ընթացք բռնէին դէպի նրանց շարժումները և նրանց իղձերը արտայայտող կուսակցութիւնները, ինչպէս որ արեցին։

— Երբէ՛ք։

Եթէ այդ մասին որ և է կասկած ծագի, դա կլինի պատմական հողից դուրս մի անհիմն զրպարտութիւն, որի հեղինակները իրենց մերկապարանոց տգիտութիւնը միայն ցոյց կտան գոյութիւն ունեցող երևոյթները և նրանց յառաջացնող պատճառները բացատրելու, մեկնաբանելու մէջ։

Թրքական լծի տակ հեծող ժողովրդների շարժումները անշեղ արդիւնարար էին նրանց զարգացման և պատմական կեանքին, նրանց քաղաքական, տնտեսական, ընկերային վիճակը շրջանակող անտանելի պայմաններին։ Այդ շարժումների երևոյթը՝ իբրև քաղաքական մի երևոյթ՝ բոլորովին բնական, անխուսափելի էր, նոյնքան բնական՝ որքան երկու հակատարր ամպերի ընդհարումը և դրա

հետեւանքը եղող կայծակի ու որոտումի յառաջանալը։ Եւ քանի որ դժգո՛հ ազգերի ընդվզումը գոյութիւն ունեցող իրերի տրամագծական հետեւանքն էր, ապա չկար, չէր էլ կարող լինել երկրի երեսին և ո՛չ մի բռնապետութիւն, որքան էլ որ նա ճնշիչ, զօրեղ և մեծաքանակ տարրեր ունենար, որ կարող լինէր բողոքողների ձայնը խեղդել՝ նրանց արտադրած յեղափոխական հոսանքի ափերից դուրս գալը արգիլել։ Այդպիսի մի բան չէր կարող լինել, իսկ եթէ լինէր, դա էր որ հակաբնական պիտի լինէր։

Ընդվզելու ձգտումներ արտայայտող ազգերի և նրանց ցանկութիւնների թարգմանը եղող յեղափոխականների դիրքը պարզ կերպով որոշող ա՛յնքան շատ նախանշաններ կային, որ երկմտութեան թեթև քօղ անգամ չէր կարող լինել՝ նրանց պահանջի հիմունքների արդարութեան և իրաւացիութեան մասին. շարժումների մէջ մտնող ժողովուրդները և նրանց արտադրած պայքարող մարմինները, սկզբից ի վեր, ամենայն քաջութեամբ հրապարակ էին դրել իրենց բողոքի ցանկը՝ գոյութիւն ունեցող պետական-բռնապետական չարիքների դէմ, և մատնանիշել նրանց փոխարինող իրական դարմանները, ծրագրերը՝ որոնք իրենց ամբողջութեամբ, իրենց էութեամբ աւելի շինիչ, դրական կողմեր էին ներկայացնում, նոյն իսկ թրքական շահերի տեսակէտից, քան քանդիչ, բացասական, եթէ Օսմանեան ղեկավարիչ ոյժերը, ինչպէս և "Երիտասարդ"ները՝ մի փոքր աւելի լայն խորհած լինէին և փոխանակ ոյժի իրաւունքի, արդարութեան իրաւունքը ճանաչած լինէին, — ինչպէս որ արել էին նոյն կացութեան մէջ գտնուող ուրիշ պետութիւնների մէջ գործող ոյժերը։

Անշուշտ կարելի էր, գուցէ, զարթնող ժողովրդների փափաքները ամփոփող ծրագրերի զանազան կէտերի, հեռաւոր շրջանների համար մտածմունքներ պարունակող խնդիրների մասին վիճել, հակառակել, — այդ կարելի էր և դա ո՛չ մի լուրջ վնաս կարող էր բերել դէպի ընդհանուր խնդիրները, ընդհանուր գործը. ինչ որ վերաբերում էր բոլոր տարրերի համերաշխութեան և համագործակցութեանը, պայմանով սակայն որ մին միւսին պատուանդան դառնալու

սիստէմը չընդունուէր։ Եւ այս էլ ասենք, անմիջապէս՝ որ տարօրինակ ոչինչ չկայ. ամէն ընկճուած ազգ, ամէն հաւաքական մարմին, ամէն պայքարող կազմակերպութիւն, միշտ՝ իր կենսականութեան և գոյութեան իրաւունքի գրաւականներից առաջինն է համարել ունենալ և՛ իր շա՛տ հեռաւոր նպատակները, իր երազները ի՛սկ, որոնք եղել են իրենց մղիչ խրախոյսը, դրդող ազդակը, ոգևորող, թռիչք տուող իդէալը։ Դա եղած է ամէն տեղ, ամէն ժամանակ, անհրաժեշտ էր որ նոյնը լինէր և՛ Թիւրքիայի բաղկացուցիչ մասերը կազմող ազգութիւնների մէջ։

Բայց խնդիրն այն է՝ թէ տրտնջող, բողոքող, ապստամբող ազգերի, նրանց մարտնչող մարմինների արտայայտած նախնական ա ր դ ա ր իղձերը, առաջադրած ա ն մ ի ջ ա կ ա ն նպատակները երբէք չէին հակառակում Թիւրքիայի բուն միայուն շահերին՝ իբրև պետութեան։ Նրանց սկզբնական պահանջները և ո՛չ մի միտում ունէին թուլացնել, ջլատել, քայքայել և վերջապէս կործանել Թիւրքիան՝ գլորելով և՛ Թուրք ժողովուրդը։ Ո՛չ, այդպիսի բան չկար. յեղափոխական շարժումների դիմող, այսօր իրենց անկախութիւնը և կիսանկախութիւնը ձեռք բերող ժողովրդների պատմութիւնը այնտեղ է հաստատելու համար, որ Թիւրքիան բոլորովին ուրիշ վիճակ և բախտ կունենար, եթէ նա ունեցած լինէր ա՛յնպիսի բանիբուն պետական անձնաւորութիւններ; որոնք ընթացած լինէին ո՛չ թէ ա ս ի ա կ ա ն, այլ ե ւ ր ո պ ա կ ա ն քաղաքակրթութեան տուած ճանապարհներով և հիմունքներով՝ ինչ որ վերաբերում է բաղկացուցիչ այլատարր ազգութիւններից կազմուած մի պետութեան վերաշինութեանը։

Բողոքող ժողովրդների բարենորոգչական համեստ փափաքները, նրանց պահանջած քաղաքական, տնտեսական, ընկերային՝ իրենց զարգացման համապատասխան՝ հաստատութիւնները իրենց ամբողջութեամբ ո՛չ թէ Թիւրքիան կործանելու, քայքայելու, այլ վերաշինելու առատ սաղմեր ունէին, եթէ միայն "Երիտասարդ"ները այդ հանգամանքից, իրերի առաջ բերած այդ ն ո ր դրութիւնից և հոսանքից խելօք կերպով օգտուել գիտենային։

Եթէ "Երիտասարդ Թուրքեր"ը ցանկանում էին իրենց

ընդհանուր հայրենիքի իրական վերածնութեանը, — բաղկացուցիչ ազգութիւնների մասնաւոր ցանկութիւնները դրան ներհակ չէին։ Եթէ իրենք փափաքում էին ներքնապէս խաղաղեցնել, ամրապնդել Թիւրքիան, տալ նրան գոյութեան ամուր հեցուկներ, — բողոքող ժողովուրդները դրան ընդդէմ չէին։ Եւ եթէ իրենք ընդհանուր միտում ունէին ապահովել իրենց երկիրը օտար պետութիւնների կլանող ախորժակից և նրա յարատևութեան պայմանները արտաքին հակամարտ ազդեցութիւնների ու մրցումների երերուն ալիքներից հանելով՝ ներքին բաղկացուցիչ տարրերի զօրութեան վրայ դնել, որպէսզի այդպիսով ապրելու և յառաջադիմելու երաշխաւորութիւններ ունենար, — տառապող, մարդկային և ազգային գոյութեան անհրաժեշտ իրաւունքներ պահանջող ռայեայ ժողովուրդները դրան ո՛չ միայն հակառակ չէին, այլ իրենց շարժումներով, իրենց անմիջական ձգտումներով՝ նրանք առաջինն էին բերում ընդհանուր վերաշինութեան անկիւնաքարը իրենց Հայրենիքներում, որի անունով միայն նրանք իրաւունք և պարտականութիւն ունէին խօսելու, պահանջներ յայտնելու և, ի հարկին, զէնք վերցնելու։

Իրապէս բարեփոխուելիք Թիւրքիային՝ իրենց վիճակին բարեփոխութիւն պահանջող՝ նուաճուող երկիրները մահացու հակառակորդ չէին, մի փոքր հեռատես աչքի համար։ Հարկաւոր էր միայն ամէն մէկ երկրի տեղական պահանջներին համեմատ բարեփոխութիւնների սիստեմ ընդունել և իրականացնել աշխատել, — ինչ որ չմտածեց անել "Երիտասարդ Թիւրքիան"։

Վեր առնելով կողմերի ընդհանուր իղձերի ամբողջութիւնը, ուղղութիւնը, նրանց տածած գաղափարների, ծրագրերի նուազագոյնը՝ անմիջականը, բաղկացուցիչ ազգութիւնների Երիտասարդների և "Երիտասարդ Թուրքեր"ի ընդհանուր ձգտումների միջև — ընդունելով որ սրանք անկեղծ են — էական, գլխաւոր մի տարբերութիւն եթէ կայ, այդ այն է՝ թէ ի՞նչ միջոցներով, ի՞նչ ուղեգծերով, ի՞նչպէս և ի՞նչ հաստատութիւններով կարելի էր հասնել այն մօտաւոր նպատակներին, որոնց իրագործումից կարող լինէին օգ-

տուել թէ՛ Հայ, թէ՛ Արաբ, թէ՛ Ալբանացի, թէ՛ Մակեդոնական ազգութիւնները և թէ ընդհանուր Թիւրքիան։ Ի՞նչպէս անել՝ որ ամէն ինչ քանդող, կործանող Բռնակալութեան դէմ մղած պայքարի արդիւնքից բաւականութիւն ստանային թէ՛ "Երիտասարդ Հայեր"ը, թէ՛ "Երիտասարդ Արաբներ"ը, թէ՛ "Երիտասարդ Մակեդոնացի"ները, ևայլն, և թէ՛ "Երիտասարդ Թուրքեր"ը, եթէ սրանք ձեռք ձեռքի տային մի օր։

Ահա պարզ, որոշ, պատմական նշանակութիւն ունեցող հարցը, որի լծուելուն համար հարկաւոր էին, և հարկաւոր են, ո՛չ միայն անկեղծ, այլև կարող, ստեղծող ոյժեր։

Դրուած հարցին անմիջապէս պատասխանելուց առաջ՝ նորից մատնանիշ ենք անում այն փաստը, առաջին՝ որ "Երիտասարդ Թուրքեր"ի պաշտպանած գաղափարները և այդ գաղափարներին հասնելու համար դործ դրուած միջոցները մինչև ցարդ դրական և ո՛չ մի արդիւնք են առաջ բերել՝ Թիւրքիայի թէ՛ ներքին և թէ՛ արտաքին խնդիրների տեսակէտից։ Երկրորդ՝ Թիւրքիան այսօր էլ նոյն ընդարմացած, անդամալուծուած, նոյն անկայունութիւն ներկայացնող պետութիւնն է, ինչ որ էր դեռ շա՛տ դարեր առաջ։ Այժմս էլ Օսմանեան պետութեան մէջ լիածաւալ գոյութիւն ունեն նո՛յն քայքայիչ տարրերը, յուզուում են նո՛յն խնդիրները և նո՛յն սլաքներն են ուղղուած դէպի նրա սիրտը ու իր վերջնական տապալումը անխուսափելի դարձնում — եթէ եղածը շարունակուի — ինչ որ կային դեռ "Երիտասարդ"ները ասպարէզ չմտած։ Այնպէս որ՝ եթէ "Տերունիներ"ը քանդեցին, կործանեցին, մահուան դուռը հասցրին, "Երիտասարդ"ներն էլ "Հիւանդ Մարդ"ը բուժել, ելեկտրացնել, իրեն սեպհական ոտքերի վրայ դնել չկարողացան։ Պատմութեան անողոք դատը այնտեղ է, նա կենդանի վկայ է։ — Ի հարկէ, այդ բոլորը միա՛յն և միա՛յն նրա համար, որ Ռէշիդը և իր բոլոր յաջորդները օսմանեան պետութիւնը կազմող տարրերը ճանաչելու, գնահատելու իրական կորովամտութիւնը չունեցան, չկարողացան կանոնաւոր, կազմակերպուած պայքարող մարմին կազմել և իրենց ընդհանուր երկրի ու նրա տարածութեան վրայ բնակած ժողովրդների իսկական պահանջներին համապատասխան նպատակայարմար քաղաքա-

կան հաստատութիւններ ձեռք բերելուն ձգտել։ Եթէ "Երիտասարդ"ները եղածների, գոյութիւն ունեցող ամէն ղժուարութիւնների միակ պատասխանատուն համարում էին "Ծերունի"ներին, ապա ո՛չ նուազ մեղադրանքի արժանի են և՛ իրենք, զի ամէն մարտնչող մարմին, ամէն պայքարող կազմակերպութիւն իր առանձին պատասխանատուութիւնն ունի՝ ամէն տեղ և ամէն ժամանակ։

Եղաւ այն, ինչ որ պիտի լինէր, զի դա անխուսափելի էր։

Եւ ի՞նչ էր եղած անխուսափելին, —այն՝ որ Օսմանեան պատմութիւնը ստեղծել, տուել էր անամբողջացման (désintégration) պատճառներ և իրողութիւններ։ Բաղկացուցիչ ազգութիւնները բնական ուրիշ ճանապարհ չգտնելով՝ միշտ ձգտել էին բաժանուել, անջատուել, ազատուել Օսմանեան բռնապետութիւնից։ Եթէ "Ծերունի„ները դրա համար մեղադրւում էին, "Երիտասարդ„ներն էլ գործեցին պատմական այն խոշոր սխալը, որ իրենք էլ չուզեցին ճանաչել նուաճուող, բայց զարթնող ազգութիւնների ազգային անհատական գոյութեան իրաւունքը և չձգտեցին նրանց պահանջներին բաւարարութիւն տալու նպատակ ունեցող քաղաքական հաստատութիւններով օժտել ընդհանուր Թիւրքիան. ուստի թէ՛ "Երիտասարդ"ները իրենք անյաջողութեան բաղխեցան և թէ պայքարող ազգութիւնները նրանցից ո՛չինչ ակնկալելիք չունենալով՝ շարունակեցին իրենց նախկին ուղեգծերովը ընթանալ։ Պատմական այդ կարևոր սխալը աւելի կարկառուն կերպով դուրս ցայտեցնելու համար՝ անցնենք բուն խնդրին և հարցն այսպէս դնենք.

— Թէ որո՞նք են այն հաստատութիւնները, այն միջոցները, որոնք կարող են բարեկարգել թէ՛ ընդհանուր Թիւրքիան և թէ՛ անմիջական կերպով՝ մասնակի գոհացում տալ պայքարող Հայաստանին, Մակեդոնիային, Արաբիային, Ալբանիային, և այլն։ — Նախ քան այդ հարցերին անցնելը՝ հարկաւոր է քննութեան առնել ընդհանուր գործողութեան թատր եղող միջավայրը և հարցնել՝ թէ ինչ է Թիւրքիան։

## VIII

## ԹԻՒՐՔԻԱՅԻ ԻՐԱԿԱՆ ԿԱՑՈՒԹԻՒՆԸ ԵՒ ԿԱԶՄԸ

Ի՞նչ է եղած անցեալի մէջ և ի՞նչ է այժմս Թիւրքիայի ընդհանուր կացութիւնը և նրա կազմը՝ բաղկացութիւնը։

— Իր բաղկացութեամբ, կազմի տեսակէտից՝ Թիւրքիան տարասեռ (hétérogène) ժողովրդներից բաղկացած մի պետութիւն է, որի այլազան տարրերի մէջ հաստատուն, տևական և ո՛չ մի կապ կայ՝ բացի իշխող բռնապետութեան վարչական և օրէնսդրական դրութիւնից յառաջացած փոխադարձ յարաբերութիւնները, որոնք աւելի վանիչ, անջատող բնաւորութիւն ունին, քան միացնող, մօտեցնող, համերաշխական զգացմունքներ ստեղծող։ Հակառակ իրենց կամքի՝ մի բռնաւորի միահեծանութեան տակն են մնած տարբեր ցեղեր, — մարդկանց այնպիսի տեսակներ, որոնք ունեն հաստատուն և փոխանցելի բնորոշ գծեր, և հետևաբար այլասեռ համախմբումների անջատումը բնական է, ծնունդ անցեալի և ո՛չ թէ արհեստական։ Ուրեմն, իր ամբողջութեամբ՝ օսմանեան կայսրութիւնը իրարու մօտ դրուած մի հաւաքածու, մի շեղջակոյտ է զանազան ազգութիւնների, որոնցից իւրաքանչիւրը ունի իր սեպհական կեանքը, տարբեր անցեալը, լեզուն, կաշկանդող սովորութիւնները և այն բոլոր ազդակները, որոնք մի համախմբութեան օղակող գծերն են կազմում՝ միւսներից տարբերելու համար։ Այդ բոլորի վրայ բարդւում է և՛ այն հանգամանքը, որ գոյութիւն ունեցող ազգութիւնները կուլտուրայի, քաղաքակրթութեան տարբեր աստիճանների վրայ են գտնւում, — այն՝ ինչ որ մէկի համար կենսական, իրական պահանջ է, միւսի համար գոյութիւն չունի։

Ու վերջապէս, պարզ իրողութիւն է և՛ այն, որ այդ չձուլուելիք, հակամարտ ձգտումներ ունեցող տարրերը իրարից բաժանւում են և՛ աշխարհագրական, ժողովրդագրական տեսակէտով ու անջատ՝ բաւականին հոծ միութիւններ են կազմում։ — Ահա թէ ինչո՛ւ օսմանեան պետութեան մէջ դարերից ի վեր յուզւում, յառաջ են գալիս ա՛յն բոլոր խնդիրները, որոնք տ ա ր ա ս ե ռ ժողովրդներից բաղկացած մի պետութեան անբաժան մասն են կազմում։ Քաղաքական հա-

միանման դրութիւն ունեցող ամէն պետութիւն, թէ՛ անցեալի և թէ՛ ներկայի մէջ՝ շարունակ ենթակայ է եղել այն բոլոր ներքին խռովութիւններին և յուզումներին, որոնք երէկ և այսօր գոյութիւն ունեն Թիւրքիայում։ Այն՝ ինչ որ կատարւում է այժմս, — անխուսափելի էր։

Ճշմարիտ է, Օսմանցին իր զէնքին կրթնած, ամենազօրաւորի իրաւունքը իրեն սկզբունք արած՝ շատ անգամ յաջողել է այդ օտարասեռ ժողովրդներին հնազանդութեան, հպատակութեան շաւղի մէջ պահել, բայց միայն այն հանգամանքը՝ որ նա իր պատմական կեանքի մէջ անկարող է եղել այդ բոլորին տարրալուծել, նրանցից մի ամբողջութիւն կազմել, — այդ ցոյց է տալիս որ իր զէնքը ամէն ինչ չի եղել և նրանով ամէն իր ուզածը չէր կարող կարգադրել. արդ՝ բացարձակ անհրաժեշտութիւն է, որ գոյութիւն ունեցող ազգերի իղձերը, ձգտումները հաշուի առնուին, եթէ ցանկութիւն կայ որ Թիւրքիան իր գոյութիւնը շարունակի, և ինքն իր ձեռքով իր տապալումը չարագացնի։

Ազգերի պատմութիւնը անհերքելի շատ փաստեր ունի իր մէջ բովանդակած այն մասին՝ թէ ինչպէս տարասեռ տարրերից կազմուած մի պետութիւն անկարելի է ներքին խաղաղութեան մէջ պահել՝ միանման, համատիպ հաստատութիւններ պարտաւորեցուցիչ դարձնելով բաղկացուցիչ բոլոր ազգերի համար, նամանաւանդ երբ տիրող տարրը եղել է թոյլ, ժամանակի յառաջադիմական հոսանքից յետ մնացած։ Եթէ բռնակալ տիրողի սուրը չի կարողացել այդ դէպքում բացարձակ լռութիւնը, անձայն հնազանդութիւնը մշտնջենաւորել, — նրա գըծած միակերպ օրէնքները, Քաղաքական միանման Հաստատութիւններն էլ անզօր են եղել այլազան ժողովրդների մէջ ներքին խաղաղութիւնը յարատև և բացարձակ պայման դարձնել։

Եթէ իրերի բնաւորութիւնն է որ տալիս է օրէնքներ, ապա նոյն այդ իրերի միայն պայմաններն էլ տալիս են միջոցներ մի երկիր, մի պետութիւն կառավարելու, ամրապնդելու։

Տարասեռ ժողովուրդներ բովանդակող պետութիւնների տիպարը կարող է համարուել Աւստրիան։ Այդ երկիրն էլ ունեցել է իր ծանր ճգնաժամերը, երբ իր վերջնական անկումը անխուսափելի է նկատուել, և այդ կասկածը կայ մինչև այժմ։ Արդ, այդ բազմալեզու պետութեան թագակիրների, պետական անձերի հոգացողութեան գլխաւոր առարկան է եղել՝ թէ ի՞նչպիսի օրէնքներով, ի՞նչ հաստատութիւններով կառավարել այդ բազմացեղ ազգերը, որպէսզի ներքին խաղաղութեան հետ մէկտեղ պետական միութիւնը չվտանգուէր։ Դրուած հարցին պատասխանել է, միշտ, երկու որոշ քաղաքականութիւն, որ Աւստրիայի ներքին կեանքի տիրապետող ուղեգիծն է եղել։

Եղել են կառավարիչներ, քաղաքագէտ անձեր, որոնք այդ պետութեան յարատեւութեան և ապահովութեան պայմաններն են համարել՝ տալ ամբողջ երկրին միակերպ օրէնսդրական հաստատութիւններ, համանման վարչական կարգ ու կանոններ, առանց ամենափոքր չափով ուշադրութեան առնելու բաղկացուցիչ ազգութիւնների պատմական իրաւունքները և տեղական պահանջները։ Ամէն ինչ հարթող, հաւասարեցնող այդ քաղաքականութեան մարմնացումն են եղել Յովսէփ Բ.-ը և Մետտերնիխը։ Երկուսն էլ խելօք, հանճարեղ մարդիկ. բայց որովհետև իրենց հետեւած քաղաքականութիւնը գոյութիւն ունեցող իրերի պահանջին տրամագծօրէն հակառակ էր, ուստի երկուսն էլ, զանազան ժամանակներում, գերեզմանի դուռը հասցրին Աւստրիան։ Այսպէս, մի անգամ էլ ցոյց տալով՝ որ բնաղանցական մտածմունքները, a priori յղացումները, ինչքան էլ որ լաւ կերպով արտայայտուին և կորովամիտ թարգմաններ ունենան, — դեռ հերիք չեն, իրենց ղատ անհատականութիւնը ունեցող ժողովրդներին մի կաղապարի մէջ ձուլելու, նրանց՝ պետական մի ընդհանուր յայտարարի վերածելու։

Սակայն գտնուել են պետական գործերը վարող և՛ այնպիսի անհատներ, որոնք առաջին քաղաքականութեան ճիշտ հակառակն են գնացել։ — Տալ այլազան ժողովրդներին ո՛չ թէ միօրինակ, այլ տարասեռ, տեղական

պահանջներին համեմատ՝ տեղական հաստատութիւններ։ Այսինքն՝ տարբեր երկիրների պատմա-քաղաքական անհատականութիւնները աչքի առաջ ունենալով՝ այն տեսակ հաստատութիւններով օժտել երկիրը, որ մի կողմից իւրաքանչիւր ազգութիւն իրաւունք և միջոց ունենար իր ազգային անհատականութիւնը պահպանելու և միւս կողմից՝ տարբեր միութիւններ կազմող այդ երկիրները՝ տեղական հաստատութիւնների միջոցով՝ պետական միացուցիչ հաստատութիւններով իրարու հետ կապուէին։ Առաջին նպատակին հասնելու հնարաւորութիւնը նրանք համարեցին Տեղական Օրէնսդրական Ժողովները (Landtag, Diète), իսկ երկրորդին՝ Ընդհանուր Պատգամաւորական Ժողովը (Reichsrath)։ Ժողովրդի ընտրած ներկայացուցիչներից կազմուած Landtag-ը կարողանում էր, յայտնի աստիճան, ինքնավար կերպով տնօրինել տեղական թէ՛ օրէնսդրական և թէ՛ վարչական գործերը. իսկ Reichsrath-ը, առաջ Landtag-ներից որոշեալ թուով ուղարկուած ներկայացուցիչների և այժմս ընդհանուր, ուղղակի գաղտնի և հաւասար քուէարկութեամբ ընտրուած Պատգամաւորների միջոցով, իբրև տարբեր միութիւնների Կեդրոնական Մարմին, ներկայացնում են Պետական ամբողջութիւնը, միութիւնը։

Աւստրիային անկումից ազատող և նրան համեմատական կենսունակութիւն տուողը եղել է այս երկրորդ քաղաքականութիւնը, որի գլխաւոր արտայայտիչներն են եղել Շմերլինգը և Բէօստը՝ վերջինս մասնաւորապէս Հունգարիայի նկատմամբ — որ թէև մի փոքր տարբեր ձևով կապեր ունի Աւստրիայի հետ, բայց սկզբունքը նորից նոյնն է։

Եթէ այս երկրորդ քաղաքականութիւնը և նրանից յառաջացած հաստատութիւնները չլինէին — Աւստրիան վաղուց ջնջուած կլինէր եւրոպական քարտէզից։ Եւ եթէ մի օր այդ պետութիւնը ընկնի, — լրիւ և մինչև վերջ այդ սիստէմին հաւատարիմ չմնալը պիտի լինի։

Ահա՛ւասիկ, մօտաւորապէս, ներքին այն քաղաքականութիւնը՝ որ դեռ շա՛տ երկար ժամանակներ առաջ իրենց ղեկավարիչ սկզբունքը արած պիտի լինէին և՛ Թրքական

պետական անձերը ընդհանրապէս, իսկ "Երիտասարդ"ները՝ մասնաւորապէս, եթէ մի քիչ խորաթափանց միտք ունենային իրականութիւնը ճանաչելու և ողջմտօրէն գնահատելու։

Մենք դիտմամբ խոյս տուեցինք օրինակ բերելու տարասեռ ազգութիւններից կազմուած այն պետութեանց հաստատութիւնները, որոնց ժողովուրդները յառաջադիմութեան, քաղաքակրթութեան աւելի բարձր աստիճանների վրայ են կանգնած, քան աւստրիականները։— Զուիցերիան, Միացեալ-Նահանգները, Անգլիական գաղթավայրերը և նրանց ընդգրկած քաղաքական կազմը կարող է ամենահամոզիչ փաստը և օրինակը լինել՝ զանազան բաղկացուցիչ տարրերից և այլացեղ ժողովրդներից կազմուած պետութիւնների վերանորոգուելուն և երիտասարդանալուն։

Ռուսական բաժնի՝ ինքնավար Լեհաստանի խորտակելը Ռուսիային շատ մեծ ամրապնդում չբերեց։ Ֆինլանդական ինքնավարութիւնը ոչնչացնել ձգտող ցարիզմը ինքը պարտուեց և ստիպուեցաւ խոստովանիլ, որ մի պետութեան մէջ ամփոփուող տարասեռ ժողովրդներին մի ազգութեան, մի համասեռ ամբողջութեան ենթարկելու քաղաքականութիւնը իր անյաջողութեան վերջին խօսքն ասել էր՝ քաղաքակրթութեան ներկայ զարգացման աստիճանին մէջ։

Պրուսական quasi սահմանադրական միապետութիւնը՝ հակառակ իր օտարակուլ քաղաքականութեանը և ձեռք առած օրէնսդրական ամէն տեսակ բացառիկ միջոցներին, անկարող եղաւ Պօզնանի մի բուռն լեհ ժողովրդին արմատախիլ անելու՝ նրան ապազգայնացնելու, նոյնացնելու (assimiler), գերմանացնելու։

Սակայն իրողութիւն է, որ մինչև երեսնական Թուականները՝ Թրքական պետութիւնը անկման այնչափ ախտանշաններ էր ցոյց տուել, որ փոքր ի շատէ կորովամիտ մի բարենորոգչի համար դժուար չպիտի լինէր խուզարկել, գտնել այն կռուանները, որոնց վրայ միայն յենուելով Օսմանեան բազմալեզու կայսրութիւնը կարող պիտի լինէր թէ՛ ներքին խաղաղութիւն վայելել և թէ՛ իր գոյութիւնը ապահովել արտաքին հարուածներից։ Եթէ այդ ժամանակուան Թուրք երի-

տասարդութիւնը ա՛յնքան կարճատես գտնուեց՝ որ այլասեռ տարրերի ընդհանուր կոտորածը, ամբողջական կրօնափոխութիւնը ամենաէական պայմաններից մէկը դառեց Թիւրքիայի ապագայ ապահովութեան տեսակէտից, դժբախտաբար յիմնական, վաթսնական թուականների "Հեռեւակ" բարենորոգիչներն էլ տարատամ ձգտումներ յայտնելուց միւս կողմը չանցան. իսկ եօթանասնական՝ Միդհատեան շրջանի "մեծամոլներ"ը բռնեցին մի կեղծաւոր, նենգամիտ դրութիւն, ճիշտ զուգահեռականը այն "Ծերունիներ"ի, որոնք գոյութիւն ունեցող դժուարութիւնների ժամանակաւոր հեռացումը, յապաղումը՝ լուծում էին համարում: Հետեւաբար, Միդհատեան շրջանից մնացած բեկորները այժմ բռնուած են մի անողոք երկառածի մէջ, — կա՛մ հետեւել իրենց նախորդներին և հանդիսատես լինել Թիւրքիայի գլրգալից կործանմանը, կա՛մ թողնել իրենց պատմականօրէն արդէն դատապարտուած սկզբունքները և գծել նո՛ր ուղի, նո՛ր միջոցներ ու այդպիսով իրենց երկրի ընդհանուր վերաշինութեան գործը հաստատուն հիմունքների վրայ դնել, — ի հարկէ, եթէ իրօք ցանկանում են մի բան, մի գործ առաջ բերել, և ո՛չ թէ թղթային ցոյցերով խաղի բռնուել: Մանաւանդ որ ուղղամտօրէն պայքարել ուզող՝ Թիւրքիայի իրական վերածնութեանը նախանձախնդիր թուրք անհատների գործը այժմ և՛ս աւելի դիւրացած է, բաղկացուցիչ ազգութիւնների մարտնչող մարմինների երեւան գալովը, որոնք՝ իբրև կռուող ոյժ, իրենց սլաքները ուղղած են դէպի նո՛յն բռնապետութիւնը, նո՛յն աւերող, քանդող Ընդհանուր Թշնամին, որի quasi-հակառակորդն են համարւում և՛ իրենք:

Եւ մենք իրերի անխուսափելի ընթացքը "Երիտասարդ"-ներին մի անգամ էլ յիշեցնելու համար էր՝ որ բաւականացանք միայն մատնանիշել բարենորոգումների այն ընդհանուր ուղղութիւնը, ոգին, որ կարող պիտի լինէին տեղ գտնել, անհրաժեշտաբար, այն "Երիտասարդ Թուրքեր"ի ծրագրերում, որոնք դեռ կամէութիւն են ցոյց տալիս զանազան բարենորոգումներով յետս կասեցնել Թիւրքիան իր անխու-

սափելի անկումից՝ եթէ երբեւ առաջուան դրութիւնը շարունակուի, յայտնի բան է։

Մի կողմ թողնելով միւս երկիրները՝ դառնանք այժմ Հայաստանին։

Այստեղ խնդիրը աւելի պարզ, որոշ և շօշափելի ձև ունի առած։

IX

## ՀԱՅԱՍՏԱՆ ԵՒ ԹԻՒՐՔԻԱ

Հայաստանը իր աշխարհագրական դիրքով Թուրք պետական, կայսերական բերդի դուռն է կազմում։ Հայաստանը ունենալով՝ Օսմանցին բերդի բանալին իր ձեռքն ունի, իսկ առանց նրան՝ նա ո՛չ միայն ամրոցի տէրը չէ, այլ այդ ամրոցը գոյութիւն ի՛սկ ունենալ չի կարող, ինչքան էլ որ նա փոքր ծաւալի վերածուէր։ — Կ. Պօլսի փականքը Հայկական բարձունքների վրայ պիտի որոնել։

Հայ ժողովուրդը Օսմանեան պետութեան կենսաբեր ջիղը, նեարդն է կազմում։ Առանց այդ աշխատասէր, արտադրող, ստեղծող ժողովրդի, Թուրք պետութիւնը իր ունեցած միւս տարրերով կարող է մի խառնիճաղանճ, վաչկատուն ամբոխ կազմել, ցրուած աւելի կամ նուազ ընդարձակ մի տարածութեան վրայ,—բայց ո՛չ թէ մի կանոնաւոր, կազմակերպուած պետութիւն՝ նոր մտքով։ — Հայը Թուրք պետութեան պահպանող պատուանդանը, արիւնատար երակն է։

Եթէ անվիճելի է որ Հայաստանը Թիւրքիայի շտեմարանն է, ապա նոյնքան անտարակուսելի է, որ Հայ ժողովուրդն էլ այդ շտեմարանը լցնողն է։

Տատերի կողմից Օսմանցին "ընտիր զինուորների մի կոճղ" է նկատուել։ Կայ պատմութիւն՝ Հայը զինուորական այդ յատկութեան հետ երևան է բերել և՛ մի ուրիշ աւելին՝ — շինող, կազմակերպող, ստեղծող։ Եւ մինչդեռ Օսմանցին իր սպառազմական խանդը դուրս թափելուց յետոյ լճացել, փայտացել, կանգ է առել, տիրապետել՝ առանց կանոնաւորել կարողանալու, — Հայը, եթէ յաղթող՝

ներդաշնակել է, եթէ յաղթուող՝ իր վէրքն է գոցել, իր ոյժերը կազդուրել և շարունակ, մի՛շտ յառաջադիմել։ Եւ այսօր Հայը տէր է մի կուլտուրայի, բովանդակող է քաղաքակրթական այնպիսի տարրերի, որոնցից այժմս բոլորովին զուրկ է Օսմանցին՝ ընդհանուր զանգուածային տեսակէտից։

Եթէ եղաւ մի Բէօստ, որ փշրուած, խորտակուած Աւստրիայի համեմատական կայունութիւնը Հունգարական ժողովրդի ազատասիրական արդար ձգտումներին բաւականութիւն տալու մէջ տեսաւ, — դժբախտաբար՝ Թուրքը իր պատմական երկունքի մէջ մի Բէօստ արտադրելու անընդունակ եղաւ։ Բայց Հայը իր հաստ զէնքի, իր կորովի բազկի հետ միասին Օսմանեան պետական մեքենան վարող, յառաջ մղող նիւթն էլ պիտի տար ! ։ Եւ Օսմանցին՝ "Մերունի" կամ "Երիտասարդ" անհեռատես Օսմանցին՝ ժամանակաւոր պտուղը վայելելու համար, աշխատեց ծառը արմատաքի տապալել. մոռանալով սակայն, որ այդպիսով իր ինքնասպանութեան գործիները իր ձեռքովն էր պատրաստում։ Իր ամբարտաւանութեան, իր ինքնագոյութեան շահը միայն առաջնորդ բռնելով՝ Թուրքը, եթէ մի քիչ թափանցող խելք ունենար, դեռ շա՛տ վաղուց, ինքնաբերաբար, պիտի ջանար Հային գոհացնել, նրան յառաջադիմութեան մասնաւոր պայմաններ տալ, և այդ՝ նոյն իր շահի, իր ապահովութեան տեսակէտից։ Իսկ փոխանակ դրան՝ նա Հայերիս նկատմամբ սկզբում հետևեց քանդող, սարկացնող քաղաքականութեան և վերջն էլ՝ բացարձակ ջնջման։

Այսպէս, դարերից ի վեր Հայը իր Մայր-Երկրի մէջ կրեց ամէն տեսակ հալածանք, ենթարկուեց ամէն կարգի հարստահարութեանց. կանխամտածութեամբ քաղաքական և ընկերային ամենաստորագոյն վիճակի մէջ դրուեց և որոշուեց գործօն ոյժեր։ էլ՝ նրան յարատևօրէն այդ դրութեան մէջ պահելու, — բայց այդ բոլորի միջից անցնելով՝ Հայը ը ն դ ու ն ա կ և կ ա ր ո ղ եղաւ մի կողմից իր վրայ ծանրացող, իրեն կաշկանդող, քայքայել, ոչնչացնել ուզող տարրերին դէմ դնելու և միւս կողմից էլ՝ Մայր-Հայրենիքի մէջ իր կենսականութիւնը պահպանելով՝ նոր կեանքի ձգտելու։ —Տառապանքի, երկունքի այդ շա՛տ երկար տարիներում՝ Հայը

երևեց մի կողմից իր ունեցածը յամառօրէն պահպանող, իսկ չունեցածի, կորցրածի համար՝ ձգտող, մարտնչող։ Եւ այսօր, չնայելով իր գլխով անցած հին ու նոր ամէն աղէտներին, նա դեռ ապրում է հոծ բազմութեամբ այն երկրի մէջ, որին համաշխարհային պատմութիւնը ճանաչել է Հայաստան անունով։

Աշխարհակալական իրաւունքով Թուրքը այդ երկիրն էլ իր կայսրութեան մի մասն է դարձրել։ Բայց մի այնպիսի մասը, որ միւս մասերից տարբերւում, անջատւում է թէ ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ տեսակէտով և թէ ՑԵՂԱԳՐԱԿԱՆ, ու կազմում մի անջատ ձոյլ, մի ընդարձակ տարաւեռ մարմնի՝ անյարակից կտորը։ Հայ ազգի ՊԱՏՄԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԻՐԱՒՈՒՆՔԸ այդ երկրի վրայ որ և է վիճաքանութիւնից վեր է և ամենափոքր առարկութեան ի՛սկ տեղիք չի կարող տալ, զի այդ իրաւունքը ճանչցուել և յարգուել է հազարաւոր տարիներից ի վեր։ — Այն ժամանակ՝ երբ Օսմանցին գոյութիւն ի՛սկ չունէր, երբ նա իր ամբոխային կազմակերպութեան մէջ դեռ չէր մտած, ինչպէս և յետոյ՝ այդ բոլոր ժամանակներում՝ ՀԱՅԻ ՊԱՏՄԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԻՐԱՒՈՒՆՔԸ կար և գործում էր այդ երկրի մէջ։ Զնայելով իր քաղաքական անկմանը՝ Հայը իր Հայրենիքի մէջ դարերի ընթացքում շեղջել, մթերել է և իր հարազատ զաւակների արիւնով ոռոգել, ուռճացրել է ա՛յնքան շատ անանցանելի կոթողներ, որ ՀԱՅԻ ՊԱՏՄԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԻՐԱՒՈՒՆՔԸ դեռ շա՜տ ու շա՜տ դարեր էլ աներկբայ կշարունակէ գոյութիւն ունենալ, գործել այդ երկրի մէջ, — և այդ՝ մինչև Հայի ամբողջական անհետացումը։

Բայց շատ հեռուն չերթալու համար՝ նկատել տանք, որ նորագոյն ժամանակներումս ՀԱՅԻ ՊԱՏՄԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ այդ ԻՐԱՒՈՒՆՔԸ հանդիսապէս ճանչցուեց և վերարձանագրուեց Բերլինի Դաշնադրութեան 61-րդ յօդուածովը։ Հետևաբար՝ Հայի այդ ԻՐԱՒՈՒՆՔԸ ճանաչել և ստորագրել է նո՛յն ինքն Օսմանցին։ Եթէ Բերլինի Դաշնադրութեան 61-րդ յօդուածովը ճանչցուեց Հայի ՊԱՏՄԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԻՐԱՒՈՒՆՔԸ այդ երկրի վրայ և նրա ընդարձակութեան մէջ բնակած՝ տիրապետող Հայ տարրի համար բարենորոգում-

ների պէտք նկատուեց՝ "տեղական պահանջներին համեմատ". — ապա Հայի այդ իրաւունքը, իր մարտիրոսացած զաւակների բազկի շնորհիւ, ո՛չ միայն նորից ճանչցուեց և արձանագրուեց 1895 Մայիս 11-ի Ծրագրով, այլև որոշուեց, գծագրուեց բարենորոգումների այն ընդհանուր հիմունքները, տրամադրութիւնները և պայմանները, որոնք կարող էին, մօտաւորապէս, բաւականութիւն տալ Հայերի տեղական պահանջներին։ Հաւաքականօրէն մշակած այդ Ծրագրով Հայաստանը ճանչցւում է մի ձոյլ (bloc) և նրա վրայ ՊԱՏՄԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ անձեռնմխելի ԻՐԱՒՈՒՆՔ ունեցող Հայի ու այնտեղ բնակւող ա՛յլ տարասեռների համար որոշւում է բարենորոգչական այնպիսի հաստատութիւններ, որոնք բոլորովին տարբեր բնաւորութիւն պիտի ունենային՝ Օսմանեան պետութեան միւս անյարակից (incohérent) մասերից։

Մայիս 11-ի Ծրագիրը հայկական պահանջների և իրաւունքների MAGNA CHARTA-ն է։ Նրա գործադրութիւնը կարող է յապաղել, ձգձգուել, բայց ո՛չ թէ մէջտեղից վերցուիլ։ Իրերի ընթացքը, վաղ կամ ուշ, ինքն ի՛սկ նրա իրականացումը անխուսափելի կդարձնի։ —Բայց դեռ Հայի բազուկը փշրուած չէ, նա կայ։

Արդ, Օսմանեան խարխլած պետութիւնը վերահաստատելու և նոր հիմունքների վրայ դնելու պատմական կոչումը ստանձնել ուզող "Երիտասարդներ"ի համար՝ ի՞նչ դեկավարիչ սկզբունքներ պիտի լինէին դէպի այն երկիրը, որ Թրքական աշխարհակալած միւս երկրներից տարբերւում, անջատւում է ո՛չ միայն ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ, ՑԵՂԱԳՐԱԿԱՆ տեսակէտից, այլև որի վրայ, անյիշատակ ժամանակներից մինչև այսօր, Հայը իր արդէն անվիճելի ՊԱՏՄԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԻՐԱՒՈՒՆՔՆ ունի և լի՛ անցեալով, քաղաքակրթութեամբ, հասարակական ու մասնաւոր ձգտումներով բոլորովին զատ մարմին է կազմում Թիւրքիայի իր բախտակից միւս տարրերից և մասերից։ - Քանդե՞լ, ոչնչացնե՞լ, ջնջե՞լ, ձուլե՞լ։ —Բայց այդ քաղաքականութեան շա՛տ երկար ժամանակներից ի վեր կպած մնացին թէ՛ "Ծերունիներ"ը և թէ՛ իրենց անդրանիկները, և դա ո՛չ մի հետևանք տուեց նոյն ի՛սկ իրենց

միտումների տեսակէտից։ Այդպիսի մի քաղաքականութեան հետևելը այժմս, նախ՝ կլինէր անկարելի, ապարդիւն, ինչպէս անցեալը այդ ցոյց է տուել, և երկրորդ՝ անարդարանալի, նոյն իրենց այն նպատակի համար, որով առաջնորդուած պիտի գործէին այդ հրէշային, թէև Օսմանեան բռնապետութեան ո՛չ անծանօթ, ոճիրը։ Եթէ "Երիտասարդներ"ը կարծում են թէ Թրքական պետութեան բաղկացուցիչ բոլոր օտարասեռ տարրերը ընդհանրապէս և Հայը՝ մասնաւորապէս մի կոյր խմոր, շաղախուելի զանգուած են, որ կարելի է իրենց կամքին և ուզածին պէս կաղապարել, այս ու այն ծաւալով մի արհեստական շրջանակի մէջ դնել, — դա էլ սխալ է, և անցեալը, կրկնուած փորձերը, ինչպէս նաև ուրիշ ազգերի օրինակները, ցոյց տուեցին որ արդարև սխալ է։

Այս բոլորից յետոյ.—որովհետև "Ծերունիներ"ի խիստ բռնապետական, չափազանց կեդրոնացման ռէժիմը Օսմանեան պետութիւնը կորստի հասցրեց. որովհետև Թրքական կայսրութիւնը բաղկացնող տարասեռ ժողովրդից և անջատ մասեր կազմող երկրներից, հակառակ Բացարձակ Բռնապետականների և Սահմանադրականների կողմից բազմիցս եղած փորձերին, անկարելի է միաձոյլ միութիւն, մի ազգութիւն կազմելու. — ուստի մնում է միայն մի ճանապարհ, որով կարելի է միաժամանակ թէ՛ Օսմանեան կայսրութեան պետական միութիւնը պահպանելու և թէ պայքարող տարասեռ ժողովրդներին գէթ մասնակի բաւականութիւն տալու ու այդպիսով Թիւրքիան ընդհանուր անկումից, բաժանումից ազատելու։ — Դա այն է՝ որ վերակազմուելիք Թրքական պետութեան ընդհանրական հաստատութիւնների նպատակը պիտի լինի ՄԻՈՒՈՐԱԿԱՆ (unitaire), իսկ միջոցը՝ ԱԶԳԱՑԻՆ—ԱԶԱՏԱԿԱՆ։ Եւ այդ նպատակին կարելի է հանել միայն տարբեր երկիրների պատմա-քաղաքական իրաւունքը, աշխարհագրական, ցեղագրական անհատականութիւնները հիմունք ընդունելով՝ տեղական ժողովրդական ընդարձակ ինքնավարական հաստատութիւններ առաջ բերելով և նը-

րանցից ծագող պետական ընդհանուր, միացուցիչ հաստատութիւններ ստեղծելով։ Եւ այդ րէժիմի, այդ հաստատութիւնների ազդակները Թիւրքիան ունի։

Ահա՛ հիմնական տարրերը, որ "Երիտասարդ Թիւրքիայ"ի ծրագրի իսկական մասերը պետի կազմէին. այդ գաղափարներումն է որ ասպարէզ պիտի իջնէին բոլոր "Երիտասարդ"ները՝ սկզբից մինչև այսօր։ Այդ էր միակ ուղին, միակ ազդու միջոցը, որով նրանք կարող պիտի լինէին Օսմանեան Բռնապետութեան տակ հեծող թէ՛ համացեղ և թէ՛ օտարացեղ քրիստոնեայ տարրերին հաւասարապէս շահագրգռելու և նրանց գործակցութիւնը խնդրելու պետական ընդհանուր վերաշինութեան գործին մէջ։ Եթէ իրենք ցանկացողներ են Օսմանեան համապետական վերանորոգութեանը, իրողութիւնն այն է, որ չգիտեն թէ ի՛նչպէս, ի՛նչ կերպով, քաղաքական ի՛նչ հաստատութիւններով վերանորոգութեան այդ գործը կարելի է իրականացնել։

Ուղիղ գաղափարները ազգեր են կեանքի կանչում և պետութիւններ ստեղծում, իսկ սխալ մտքերի կիրառութիւնները գոյութիւն ունեցող ազգութիւններ են ջնջում և կազմուած պետութիւններն էլ քայքայում։

Այժմ մի կողմ թողնելով խնդրի ընդհանուր կողմը՝ դառնանք Հայաստանին։

Իրերի ստացած դրութիւնը, պատմութեան որոշ ընթացքը արդէն այն ուղղութիւնն են ընդունել, որ այսօրուայ "Երիտասարդ Թուրքեր"ը, իսկապէս, կամայ ակամայ ստիպուած են Հայ ազգի և նրա Հայրենիքի ՊԱՏՄԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ իրաւունքը և ԱՆՀԱՏԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ իբրև ձեռք բերուած, հաստատուած իրողութիւն ընդունելու։

Այստեղ ո՛չ խուսափանք կարող է լինել և ո՛չ էլ երկդիմութիւն։

"Երիտասարդներ"ը կա՛մ այդ պիտի ընդունեն իբրև Հայի արդէն ունեցած իրաւունք, կատարուած մի իրողութիւն և ըստ այնմ որոշեն իրենց պայքարի պայմանները ու հիմունքները՝ ընդդէմ Թուրք Բռնակալութեան, կա՛մ պիտի մտնեն "Մերունիներ"ի բանակը և աշխատեն միահամուռ ոյժով

պատմութեան ընթացքը շուռ տալ և բոլորովին հակաբնական, իրերի բնաւորութեան հակառակ բաղկացութիւններ ստեղծել, եթէ միայն կարող են։ Այլապէս՝ եթէ չեն ուզում պատրուակեալ կերպով Սուլթանների թիկնապահների մէջ մտնել, և ցանկանում են տիրող միահեծանութեան դէմ մաքառել, այն ժամանակ պարզորոշ կերպով պէտք է ճանաչեն, հաշուի առնեն և իրենց պայքարի հիմունքներից մէկն անեն Հայի արդէն ձեռք բերուած, նոյն ի՛սկ ճանչցուած իրաւունքը՝ այն է ինքնավար Հայաստանի գաղափարը։

Եւ պատմութեան ընթացքը շատ պարզ է։

“Ծերունիներ”ը և իրենց նախորդները Հայութիւնը “Կրօնական” մի համայնքի վերածեցին։ Հակառակ տիրող տարրին՝ այդ “Կրօնական Համայնքը” ժամանակի ընթացքում կարող եղաւ իր իրաւունքների շրջանակը ընդարձակել և դառնալ “Կրօնա-քաղաքական մի Համայնք”։ Պատմական գործօն ոյժերը ասպարէզ մտնելով՝ նրանք “Երիտասարդ Հայեր”ի մէջ մարմնացան և Բերլինի Դաշնադրութեան 61րդ յօդուածով Հայը քաղաքական կեանքի վերակոչուեց։ Իսկ Մայիս 11-ի Ծրագրովը նոյն իսկ որոշուեց քաղաքական կեանքի այն պայմանները, այն հիմունքները, որով պիտի շրջանակուէր Հայկական Վեց Նահանգների՝ Վանի, Կարինի, Բաղէշի, Տիգրանակերտի, Խարբերդի և Սեբաստիայի մէջ միաձոյլ ապրող և իր ազգային անհատականութիւնը ունեցող Հայութիւնը։

Ուրեմն, եթէ “Երիտասարդ Հայեր”ը և “Երիտասարդ Թուրքեր”ը մի օր ուզեն ձեռք ձեռքի տալ և միահամուռ ոյժերով կռիւ մղել տիրող ընդհանուր Բռնակալութեան դէմ, — այդ համագործակցութիւնը պիտի դրուի այնպիսի պայմանների և ուղղութեան վրայ, որ ընդհանրական կռուի նպատակը և հետևանքը լինէր՝ մի կողմից ձեռք բերել մի Ինքնավար Հայաստան, իր տեղական քաղաքական ուրոյն հաստատութիւններով, և միւս կողմից՝ ընդհանուր, ուղղակի, գաղտնի և հաւասար քուէի վրայ հիմնուած Ռամկավարա-

կան մի սահմանադրութիւն՝ ամբողջ Թիւրքիայի համար, բղխած Կեդրոնական Հաստատութիւնը՝ Ընդհանուր Պարլամէնտը կարող լինէր ինքնավար բոլոր երկրների, հետեւաբար և՛ Հայաստանի միջև պետական միութիւնը անխախտ պահել։

Ահա՛ իրերի իսկական բնաւորութեանը համապատասխան այն միակ միջին, իսկապէս չափաւոր և հնարաւոր նախապայմանը, որով պատմական հողի վրայ կանգնած Հայ Յեղափոխականը կարող պիտի լինի իր գործակցութիւնը տալ "Երիտասարդ Թիւրքիայ"ին և օսմանեան համապետական վերանորոգութեան գաղափարը պաշտպանողներին։

Խնդիրն, ի հարկէ, դեռ ընդհանուր սկզբունքի վրան է. իսկ գալով գործնականին, դեռ բաւական չէ, որ „Երիտասարդ Թուրք"երը, աւելի կամ նուազ անկեղծութեամբ, բառերով միայն ընդունեն Հայ Յեղափոխականի պաշտպանած այս հիմնական կէտերը, այլ նրանք նախապէս, որոշ կերպով, այդ ցոյց պիտի տան և՛ գործով՝ իրենց պայքարի ձևերով և ուղղութեամբ,—հակառակ պարագային որ և է յարմարում (compromis), որ և է գործակցութիւն և համերաշխութիւն չի կարող լինել մեր և նրանց միջեւ։

Եւ այդ հասկանալի է թէ ինչո՛ւ։

"Երիտասարդ Թիւրք"երը մի անգամ ընդմիշտ պէտք է համոզուին, որ առանց Թիւրքիայի բաղկացուցիչ բոլոր տարրերի միահամուռ գործակցութեանը և համերաշխութեանը՝ անկարելի է ամբողջ Թիւրքիան վերանորոգել և նոր հիմունքների վրայ դնել։ Իսկ այդ գործակցութիւնը և համերաշխութիւնը պէտք է որ ունենայ իւր կանխորոշ պայմանները և նպատակները։

Մենք այստեղ, պարզ է, դեռ չենք խօսում դրսից գալիք դժուարութիւնների մասին։ Այսքանը միայն ասենք, որ Սուլթանականութիւնը և իրեն նեցուկը եղող հին ոյժերը՝ առանց օրհասական մարտ մղելու, տեղի չպիտի տան, և այդ մինչև այն աստիճան, որ նրանք, ի հարկին, կոչ պիտի անեն արտաքին օգնութեան. իսկ թէ

այդպիսի օգնութեան ընդունակ են գալ դրսի Րէակ-ցիոնէր Ոյժերը,—այդ մասին կասկած անգամ չի կարող լինել. Թուրք պատմութիւնը պատմական այդպիսի դէպքեր շատ ունի արձանագրած։ Բոլորովին ուրիշ կը լինի խնդիրը, սակայն, երբ Հրապարակ կմտնեն պայքարող այն ժողովուրդները՝ որոնց Դատերը միջազգայնօրէն արդէն ճանչցուած և ստորագրուած են։ Այդ դէպքում, և այդ դէպքում միայն, ընդհանուր դիւանագիտութիւնը, Արևելեան Խնդրով շահագրգռուող պետութիւնները—որոնք Թիւրքիայի իսկական տէրերն են և առանց որոնց ո՛չինչ կարելի է անել—կամայ ակամայ ստիպուած պիտի լինեն Թիւրքիան պահելու սկզբունքի վրան համաձայնութիւն կայացնել։ Խնդրի այդ մասը այնքան պարզ է, որ չենք ուզում մանրամասնել և պատմական փաստեր մատնանիշել։

Առնենք պատմական մի ա՛յլ երևոյթ։

X

## ՕՍՄԱՆԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԵՒ ԱԶԳՈՒԹԻՒՆՆԵՐ

Օսմանականութիւնը (Օսմանլըլըք) մի սկզբունք է, որ Թիւրքիայի ներքին քաղաքականութեան տիրող ուղղութիւններից մէկն է համարւում։ Այդ սկզբունքի իրագործմանն են հետապնդել, մանաւորապէս անցեալ դարու 30-ական թուականներից, ո՛չ միայն Թուրք պետական ղեկավարիչ անձնաւորութիւնները և "Ծերունիներ"ը, այլև "Երիտասարդ Թուրքեր"ը. այդ նկատմամբ ընդհանուր համաձայնութիւն է եղել և ամէնքը անխտիր, աւելի ու նուազ սաստկութեամբ, ազգային այդ քաղաքականութեան շուրջն են դարձել։ Օսմանեան Կայսրութիւնը իր ամրապնդումը և կայունութիւնը կը գտնէր միայն այն ժամանակ, երբ նրա մէջը բովանդակուած ազգութիւնները բոլորը Օսմանցիներ կդառնային կամ օսմանցիներ լինելու գաղափարը կընդունէին վերջնականապէս,— սա էր ղեկավարիչ սկզբունքը։

Օսմանականութեան գաղափարը պաշտպանել և իրագործել են աշխատել ո՛չ միայն քրիստոնեայ ազգութիւնների՝ Հայերի, Յոյների, Բուլղարների, և այլն, նկատմամբ, այլև մահմեդական ժողովրդների՝ Արաբների, Ալբանացիների, Քիւրդերի, Չերքէզների, Լազերի, և այլն։ “Օսմանլըլըք,,ը Թրքական նացիոնալիզմի ազդակների մէջ ամենազօրաւոր և առաջին տեղն է բռնել։

Տիրող ընդհանուր համոզմունքն է եղել, որ Թիւրքիայի թուլութեան, նրա մասերի անջատման և դէպի անկումն տանող գլխաւոր պատճառներից մէկն էլ այն իրողութիւնն է եղել, որ այդ երկրի ընդարձակութեան վրայ մեծ ծաւալով գոյութիւն են ունեցել կեդրոնախոյս զօրութիւններ, որոնք արդիւնք են եղել տարբեր ազգութիւնների գոյութիւն ունենալուն և իրենց կենսականութիւնը պահպանելուն։ Ուստի ընդհանուր երևոյթը, արդիւնքը ջնջելու համար՝ պէտք և անհրաժեշտութիւն է տեսնուել վերջացնել ծագում տուող պատճառները։ Եւ ի՞նչպէս կարելի էր այդ նըպատակին հասնել,—բացարձակ կեդրոնացմամբ՝ այս մասին էլ ընդհանուր համաձայնութիւն է եղել Թրքական Բացարձակապետութեան ղեկավարիչ ոյժերի, “Ծերունի,,ների և “Երիտասարդ,,ների միջև։ Օրէնսդրական, վարչական, դատարանական ամբողջ մէխանիզմը այդ ուղղութեամբ է լարուել և այդ ուղղութեամբ էլ քարոզել են Թուրք բոլոր հրապարակախօսները՝ սկսած մոլլայից մինչև հասարակ թերթերի խմբագիրները։

Եւ արդարև, պատմութեան մէջ քիչ չեն եղել օրինակներ, երբ պետական այդպիսի գաղափարներ իրագործուել են և յաջողութեամբ էլ գլուխ տարուել։ Պատմութիւնը ցոյց է տուել, որ մի պետութեան ընդհանուր մարմնի մէջ մտնող մի կամ մի քանի ազգութիւններ կարելի է ձուլել, կլանել, միև նոյնացնել (assimiler)։ Եւ այդ լինում է այն ժամանակ, երբ պետական վարիչ ոյժը իր ձեռքին ունեցող, կլանող, ձուլող, նոյնացնող ազգը եղել է աւելի՛ զարգացած, աւելի՛ ուժեղ, աւելի՛ կենսականութիւն ունեցող. իսկ կլանուողը, ձուլուողը, նոյնացնողը, դրա հակառակ, եղել է աւելի՛ թոյլ, աւելի՛ յետամնաց. այնպէս որ այդպի-

սի պայմաններում դրուած նուաճուող ազգութիւնները՝ իրենց մտաւոր, բարոյական և նիւթական շահի տեսակէտից՝ աւելի նախամեծար են համարել, նոյն իսկ գիտակցաբար, կլանուելու, ձուլուելու, քան թէ առանձին գոյութիւն պահպանելու։ Անշուշտ, մի Բրետոնի, մի Բասքի համար, ամէն տեսակէտով, նախամեծարելի էր կլանուիլ Ֆրանսիական ազգութեան մէջ և Ֆրանսիական պետութեան մի մասնիկը դառնալ, քան թէ ուրոյն դիրք բռնել և իր երկրի ապառաժների վրան հաստատուել, կղզիանալ՝ զուրկ մտաւորական և քաղաքակրթական ազդակներից ։ Ֆրանսիական ազգութեան ծիրի, ոլորտի մէջ մտնելով՝ նա մասնակցում էր համաշխարհային քաղաքակրթութեան և յառաջադիմութեան, քան թէ լճանում՝ մեկուսացած դիրք պահելով։

Գալլերը (Ուէլշները), Սկովտիացիները Անգլիական ազգութեան մարմնի մէջ մտնելով՝ նիւթապէս և մտաւորապէս աւելի շահեցան։

Վենդերը Գերմանացիներ դառնալով, գերմանականութեան գիրկը մտնելով, աւելի օգտուեցան, քան կորցրին։

Որքան որ սա թոյլի իրաւունքը չճանաչելու մի սկզբունք է, բայց այդպէս է եղել պատմութեան ընթացքը մինչև այսօր , թէև այդպէս չի լինիլ ապագայում ։

Սակայն խնդիրն այն է թէ Թիւրքիայի բաղկացուցիչ ազգութիւնները ա՞յդ վիճակի մէջն էին գտնւում։ Թուրք ազգութիւնը, Օսմանլըրքի գաղափարների իրագործման հետապնդողները Ֆրանսիացինե՞ր, անգլիացինե՞ր, գերմանացինե՞ր էին։

—Ո՛չ։ Պատմութիւնը, իրականութիւնը այնտեղ է՝ խնդրի այս կողմը պարզ կերպով որոշելու համար։

Թիւրքիայի մէջ ամփոփուող, նրա բաղկացուցիչ տարրերը կազմող ազգութիւնները ո՛չ Բրետոններ են, ո՛չ Բասքեր և ո՛չ էլ Վենդեր։

Իրականութիւնը այնտեղ է՝ այս կէտն էլ հաստատելու։

Ի՞նչ է ազգութիւն։

—Մարդկիկների մի ամբողջութիւն, որ ունի նո՛յն լեզուն, նո՛յն սովորութիւնները, պատմական նո՛յն անցեալը , նո՛յն ծագումը, եւայլն, և օժտուած է բարոյական համանման յատկութիւններով։

Պատմութիւնը, ինչպէս և ընկերաբանութիւնը, ցոյց է տալիս և՛ այն, որ ազգերի կազմուելը, ձևակերպուելը և զարգացումը արուեստական մի ձևակերպութիւն չէ, որ կարելի լինի ուզած ժամանակին, մի քանի վճիռներով և հրամաններով՝ քանդել, ոչնչացնել, լուծել. այլ նրա կազմաւորութիւնը մի այնպիսի բնական երևոյթ է, որի գլխաւոր պայմաններն են ցեղը, հանրական ծագումը, միջավայրը և պատմական այն բոլոր ազդակները, որոնք ձևակերպել, արտադրել, յառաջ են բերել այդ ազգութիւնը։ Ամէն ազգ զարգանում է իրեն առանձին յատուկ և պատշաճ էվօլիւցիայով, որ նրան տալիս է բարոյական և պատմական ա՛յն կազմը, ա՛յն կերտուածքը, ա՛յն շէնքը, հանճարը և առանձնայատուկ գծերը, ինչպէս որ մի կենդանական էակ յաջորդաբար ստեղծում է իր սեպհական օրգանները և իմացականութիւնը։ Այդպիսով է որ ամէն ազգ՝ որպէս կազմակերպուած ոյժ՝ ունի իր սեպհական կեանքը, իր ինքնուրոյնութիւնը, իր անհատականութիւնը, որ նրան տարբերում է միւս ազգութիւններից։ Այդպիսի համախմբումների մէջ անցեալ սերունդների գործունէութիւնը և մտածմունքը բաղադրւում, շաղախւում է ներկայ սերունդների հետ և այդպիսով էլ պատրաստւում՝ ապագայ սերունդների բախտը։

" Ազգերը, ասում է Ռընան, *) ինչպէս են Ֆրանսիան, Գերմանիան, Անգլիան, գործում են անձերի նման, որոնք ունին բնաւորութիւն, միտք և որոշեալ շահեր. ազգերի մասին կարող են դատել, ինչպէս դատում են մի անձի մասին։ Նրանք էլ ունին, ինչպէս մի կենդանի էակ, իրենց էութեան և իրենց պահպանութեան զգացմունքը, ծածուկ բնազդը. այնպէս որ՝ քաղաքագէտների մտածումներից անկախ, մի ազգութիւն կարելի է համեմատել մի իմացական և խորաթափանց կենդանիի հետ, ինչ որ վերաբերում է իր գոյութիւնը ազատելուն և իր սեռի յաւիտենականութիւնը ապահովելուն":

*) Dialogues et fragments philosophiques, էջ 89.

Արդ, Թիւրքիայի մէջ գտնուող ազգերը այս բոլոր յատկանիշները և պայմանները լրիւ ներկայացնում են. ուրեմն և նրանք այլևս անվերածելի են։

Եւ երբ այդպէս, ապա Թիւրքիայի մէջ բովանդակուած ազգութիւնները այնպիսի ՔԱՂԱՔԱԿԱՆ ՏԱՐՐԵՐ են, որ ո՛չ միայն չի կարելի ջնջել, խորտակել, այլ նրանց անկարելի է անտեսել և հաշուի չառնել՝ երբ հարցը գալիս է ընդհանուր պետական խնդիրներին։

Օսմանականութեան գաղափարը, որպէս փոխառնովի և ուրիշներին նմանուելու մի միտք, պարզ բան է որ գոյութեան առանձին իրաւունք չունի. փաստերը, իրողութիւնները այնտեղ են մեր առաձները հաստատելու համար. նա ո՛չ միայն որ և է հող չունի, այլ ժամանակ է հասկանալու, որ նա որ և է չափով իսկի չի էլ կարող իրականութիւն ստանալ, ինչքան էլ որ նրա հեղինակները դեռ յամառին։

Օսմանականութիւնը այն գլխաւոր ազդակներից մէկն է, որ Թուրք Բռնապետութեան հետ միացած՝ յառաջ են բերում և վառ պահում անջատականութեան ոգին։ Եթէ բաղկացուցիչ ազգութիւնները կեդրոնախոյս դիրք են ընդունում, այդտեղ պատասխանատուութեան մի մեծ բաժինը ընկնում է Օսմանականութեան գաղափարը իրագործել ձգտողների վրան։ Որոշ է, ուրեմն, որ այդ միտքը և ձգտումը միայն անհամերաշխութիւն կարող է ստեղծել և վանողական ոյժ հանդիսանալ ու թոյլ չտալ որ ընդհանուր գործակցութիւն յառաջանայ։ Ժամանակը հասել է այդ գաղափարի մեռնելուն և մէջտեղից արմատապէս վերանալուն։ Օսմանեան quasi բարենորոգիչները, պետական անձնաւորութիւնները, նամանաւանդ "Երիտասարդ Թուրքեր"ը իրենց գլխից մի անգամ ընդմիշտ դուրս պիտի ձգեն անախրօնիզմ եղող այդ միտքը։

Որ այդ այդպէս է, մի կողմ թողնենք ընդհանրութիւնը, և դառնանք հայ ազգութեան։

Հայը ազգ էր, այս բառի քաղաքական իմաստովը, դեռ իր ընկճուելուց և քաղաքական անկախութիւնը կորցնելուց շա՛տ առաջ. նուաճուելուց յետոյ էլ, ինչքան էլ որ դարեւոր ամէն տառապանքների նա ենթարկուեց, ինչքան որ քան-

դէչ, կործանիչ ձեռքը նրա վրայ ծանրացաւ, այնուամենայնիւ՝ նա շարունակեց ԱԶԳ մնալ։ Հայը շարունակ պահեց իր ազգային կենսունակութիւնը, չկորցրեց իրեն ինքնուրոյնութիւն տուող յատկութիւնները. նա մտաւ եւրոպական քաղաքակրթութեան շաւղի մէջ, զարգացաւ, աճեց, կուլտուրապէս բարձրացաւ և թրքական բռնապետութեան տուած քաղաքական, տնտեսական և ընկերային պայմանները նրա համար այլևս սեղմիչ, ուրեմն և անտանելի դարձան։ Ուստի և ինքնասպանութիւն չգործելու համար՝ մի հրամայական անհրաժեշտութեամբ, որպէս իր պատմութեան և կեանքի արդիւնք, նա ձգտեց նոր կեանքի՝ յեղափոխականօրէն։

Ուրեմն, ո՛չ միայն ազգայնօրէն նրան այլևս չի կարելի ձուլել, խորտակել, կլանել, և դա շա՛տ բարձր է Օսմանականութեան գաղափարը մարմնացնողների ոյժերից, այլ նրան պէտք է հաշուի առնել, որպէս Թիւրքիայի մէջ գոյութիւն ունեցող քաղաքական մի զօրեղ տարր ու այնպէս ձգտել ընդհանուր Թիւրքիայի վերանորոգութեանը։

Օսմանեան պետութեան ամբողջականութիւնը պահպանել ուզող "Երիտասարդ"ները այդ իրողութիւնը անտեսել չեն կարող, փորձեն՝ ինչքան որ կուզեն։

Եւ երբ ազգութիւնները քաղաքական տարրեր են Թիւրքիայի մէջ, ուրեմն, հասարակ ողջմտութիւնը պահանջում է, որ նրանք գոյութեան առանձնայատուկ պայմաններ ելունենան, — իսկ այդ կարելի է միմիայն քաղաքական կատարեալ ինքնավարութեան ձևով, և ո՛չ մի ուրիշ սխալէմով. այդ է միակ ուղին, որ ցոյց է տուել պատմութիւնը և յառաջադէմ ազգերի կեանքը։

Ազգերը իրենց գոյութիւնը կարող են ապահովել, պահել ո՛չ միայն անջատականութեամբ և կամ առանձին անկախութեամբ, այլ նրանք այդ նպատակին կարող են հասնել և՛ ինքնավարական ձևով. այդ ձևն էլ նրանց գոյութիւնը կապահովի, նրանց միջոց կտայ զարգանալու, յառաջադիմելու և իրենց ընդունակութիւնները երևան բերելու համաշխարհային պատմութեան շրջանակի մէջ։ Եւ դա այնքան ճշմարիտ է,

որ պատմութիւնը շատ օրինակներ ունի տուած թէ ի՛նչպէս իրենց սեպհական անկախութիւնը արդէն ունեցող ազգութիւններ՝ քաղաքական ինքնավարական սիստեմով՝ միացել, դաշնակցել են իրարու հետ և պետական մի ընդհանուր ոլորտի մէջ մտել։

Ազգերի ի ն ք ն ա վ ա ր ա կ ա ն   ս ի ս տ ե մ ը այն միակ միջոցը և ձեւն է, որով կարելի է Թիւրքիային նոր կազմ տալ, նոր հիմունքների վրայ դնել, պահել նրա ամբողջութիւնը և վանել անջատողական ոգին. հակառակ ճանապարհը կտանի, անսայթաքօրէն, դէպի անջատումն, դէպի պետական ընդհանուր քայքայումն, — դա է իրականութիւնը։

Պատմութիւնը, նոյնպէս, ցոյց է տալիս, որ քաղաքական հաստատութիւնների փոփոխութիւնները օգտակար և յարատև են լինում միայն այն ժամանակ, երբ նոր ձեւերը արդէն հնի մէջ սաղմնաւորուած են լինում։ Արդարև, այդպէս էլ եղած է սկզբում Թիւրքիայի պետական կեանքը։

Իր պատմութեան սկզբնական օրերում՝ մոլեռանդութիւնից, անհամբերողականութիւնից և իր թուլութիւնից ստիպուած, նա նուաճուած ազգերի համար սեպհական, ա զ գ ա յ ի ն   հ ա ս տ ա տ ո ւ թ ի ւ ն ն ե ր ի սկզբունքն էր ընդունել. և այդպիսով էլ իր պետական իրաւունքի մի մասն էր դարձրել ազգերի ինքնուրոյն գոյութեան և սեպհական հաստատութիւնների գաղափարը. Հայը ունեցել է և ունի իր շատ սեղմ “Սահմանադրութիւն„ը, որ ինքնավարութեան մի ս ա ղ մ ն է և այդ սաղմը ո՛չ թէ ջնջել պէտք էր, այլ աշխատել աւելի ընդարձակել, աւելի լայն սահմաններ տալ։ Նոյնը և՛ ուրիշ ազգութիւնների նկատմամբ։

Սրանից յետոյ, միջանկեալ կերպով, մի քանի խօսք աւելորդ չէ այն երկու գլխաւոր առարկութիւնների նկատմամբ, որ շարունակ կրկնում են ծայրայեղ կեդրոնացման կողմնակիցները և “Երիտասարդ Թիւրքիա”ն։

Նրանք ասում են, որ ինքնավար ազգերը ո՛չ միայն անմիջապէս խաղալիք կդառնան Թիւրքիայի անկմամբ շահագրգռուող պետութիւնների ձեռքին, այլև իրենց առաջին

ձգտումը կանեն, օգտուելով ներկայացած պայմաններից, բոլորովին զատուել, անջատուել։

Առանց ապագային վերապահուած խնդիրների մասին a priori դատողութիւններ անելու, նկատենք միայն այս. արդեօք ո՞ր ազգերը աւելի վտանգաւոր և իրենց բախտը Թիւրքիայից խզել բաժանողներ կլինին, — ստրկացածնե՞րը, ամէն տեսակ հարստահարութեանց ենթարկւածնե՞րը, ապազգայնացման դրութեան մէջ ապրողնե՞րը, թէ՞ կեանքի և գոյքի, մարդկային և ազգային ամէն իրաւունքներ վայելողները, որոնք տէր լինելով օրէնսդրական և վարչական իրենց ներքին՝ տեղական գործերին, ամէն միջոց կունենան իրենց ընդունակութիւնները երևան դնելու իրենց Մայր-Հայրենիքի մէջ։

Երբ ընդհանուր Թիւրքիայի մէջ կստեղծուի տանելի կեդրոնական մի կառավարութիւն և պետութիւնը կանձնաւորի այդ երկրի մէջ ապրող բոլոր ժողովուրդները ու դրուած պետական ընդհանուր օրէնքները արտայայտիչ կըլինին բոլոր ազգերի կամքին, — այն ժամանակ բաժանման, անջատականութեան, օտարի ձեռքին խաղալիք դառնալու երևոյթները ըստ ինքեան կվերանան և իսկի գոյութիւն չեն էլ կարող ունենալ։ Բաղկացուցիչ կազմ ունեցող Նորագոյն Պետութիւնների օրինակները այնտեղ են՝ մեր այս ասածը հաստատելու համար։

Այն միւս առարկութիւնը՝ թէ ինքնավարական սիստէմը յառաջ կբերի պետական ընդհանուր թուլութիւն և միութիւնը կխանգարի—դա, նոյնպէս, լուրջ հայեցակէտ չի ներկայանում։ Շատ հին ժամանակներից սկսած՝ պատմութիւնը ցոյց է տալիս բազմաթիւ օրինակներով, որ ո՛չ միայն ամենից աւելի շատ կործանման սաղմեր են ներկայացրել չափազանց կեդրոնացում ունեցող պետութիւնները, այլև միութեան և թուլութեան կողմից նրանք ամենից աւելի են տուժել։ Ընդհակառակը՝ ուրիշ բազմաթիւ օրինակներ ցոյց են տալիս, որ ինքնավարական կազմ ունեցող երկիրները ամենից աւելի են ջանացել, իրենց շահի տեսակէտից, աւելի սերտ կերպով կապուելու ընդհանուր հայրենիքի և երկրի հետ,—Անգլիա-

կան գաղութները այդ մասին կասկած չեն թողնում, դեռ թողնենք միւս երկրների օրինակները։

Այնպէս որ՝ Թիւրքիայի մէջ ի ն ք ն ա վ ա ր ա կ ա ն ամէն գրութեան հակառակողները այդ երկու կողմից էլ սխալւում են։

Անցնենք մի ուրիշ՝ աւելի հետաքրքիր երեւոյթի։

## XI

## ԹԻՒՐՔԻԱՅԻ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԲԱՐԵԿԱՐԳՈՒԹԵԱՆ ԵՒ ՎԵՐԱԾՆՈՒԹԵԱՆ ԽՆԴԻՐԸ

Թիւրքիայի բախտով մասնաւորապէս շահագրգռուած պետութիւնները՝ իրենց հակամարտ շահերը մի կերպ, գէթ ժամանակաւորապէս, հաշտեցնելու տեսակէտից՝ յաճախ հարկադրուել են յայտարարելու թէ այդ պետութիւնը պէտք է պահել, որպէս անհրաժեշտութիւն։ Բայց հին շրջանակով պահելը անկարելի էր նկատուել, իսկ ՆՈՐ ի՞նչ ձեւի պէտք էր վերածել,— այս է եղած գլխաւոր խնդիրը՝ որ երկար ժամանակ զբաղեցրել է թէ՛ եւրոպական դիւանագիտութիւնը և թէ՛ անկախ մտքերը։ Այդ հարցին, Արեւելեան Խնդրի պատմութեան ընթացքում, երկու որոշ պատասխան է տրուել, պատասխաններ՝ որոնցից ամէն մէկը Թիւրքիայի ընդհանուր վերաշինութեան մի բնորոշ սիստէմն է ներկայացրել։

Ֆրանսիական դիւանագիտութիւնը գլխաւորապէս, սրա հետ յաճախ միացած և՛ Անգլիականը, այն գաղափարն են պաշտպանել, թէ Թիւրքիայի ընդհանուր բարեկարգութեան խնդիրը պէտք էր դնել միատեսակ հիմունքների վրայ, այնպէս որ ամբողջ երկրի մէջ պէտք էր միանման և համատիպ բարեկարգութիւններ ներմուծել՝ առանց ամենափոքր անգամ ուշադրութիւն դարձնելու տեղական պայմաններին, ցեղագրութեանը և աշխարհագրական դիրքին ու անցեալին, և այդ պիտի կատարուէր ամենախիստ կ ե դ ր ո ն ա ց ո ւ մ ո վ։ Եւ ի՞նչ պիտի լինէր դրա ընդհանուր նպատակը,— այն՝ որ Թիւրքիայի բաղկացուցիչ բոլոր ազգութիւնների մասնաւոր արտօնութիւնները և առանձնայատկութիւնները պիտի ջնջուէին, ամէն տարասեռ տարրեր իրենց գոյութիւնը պիտի կորցնէին և այդ բոլորի արդիւնարարը պիտի լինէր ընդհանուր ձուլումն և Օսմանեան մի ազգութեան ձեւակերպումն։

Ընդհանուր բարեկարգութեան երկրորդ սիստէմը, աւելի,

առաջարկել և պաշտպանել է Ռուսիան։— Աչքի առաջ ունենալով այն իրողութիւնը, որ Թիւրքիայի մէջ ապրում են ո՛չ թէ մէկ, այլ մի քանի տարբեր ազգութիւններ, որոնք իրարուց զանազանւում են աշխարհագրական, ցեղագրական պայմաններով, իրենց անցեալով և ունեն տարբեր տեսակի պահանջներ ու ձգտումներ, ուստի ամէն երկրի մէջ բարեկարգութիւններ պիտի մտցնուէր իր տեղական պայմաններին և պահանջներին համեմատ, և այդ կարող էր լինել՝ Ինքնավարութեան սխտեմը ընդունելով, իսկ ինքնավարական երկիրները պէտք էր առնել եւրոպական երաշխաւորութեան և կօնտրօլի տակ։ Ռուսիան բացարձակ կեդրոնացման հակառակ է եղել և դա համարել է անկարելիութիւն ու վնասակար։

Աւելի քան 70 տարի է, որ Թիւրքիայի ընդհանուր բարեկարգութեան խնդիրը հրապարակ է դրուել և այդ երկու սխտէմները շարունակ դիւանագիտական ձեռնարկների ու ծանուցագրերի նիւթ են կազմել։

Թիւրքիան, այս խնդրի մէջ, միշտ յարել է Ֆրանսիական ծրագրին, բայց ո՛չ թէ բարեկարգութիւններ իրագործելու, այլ ընդհանուր բարեկարգութեան դատը պատճառ բռնելով՝ արգելք հանդիսանալ և թոյլ չտալ որ մասնաւոր բարեկարգութիւններ տեղի ունենան, նոյն իսկ այն բարեկարգութիւնները, որոնց իրագործումը ընդհանուր դիւանագիտութեան կողմից, ուրեմն և Ֆրանսիայի ու Անգլիայի, անհրաժեշտութիւն և անյետաձգելի է նկատուել։ Ընդհանուր բարեկարգութեան խնդիրը դիւանագիտական մի ճարպիկ խաղ է եղել Թուրք կառավարութեան ձեռքին՝ Եւրոպային խաբելու, նրան զբաղեցնելու, յարուցուած խնդիրները յետաձգել տալու և իր անշարժութիւնը պահելով՝ բողոքող ազգերի ձայնը խեղդելու։

Որովհետև Թիւրքիայի ընդհանուր բարեկարգութեան խնդիրը իր պատմութիւնն ունի, ուստի համառօտիւ գծագրենք և՛ այդ. քանի որ այդ հարցը երբեմն երբեմն երևան է գալիս և մտքերի մէջ շփոթութիւն յառաջ բերում։

Մի կողմ թողնելով Սէլիմ III-ի և Մահմուդ II-ի բարենորոգչական ձգտումները, առնենք նորագոյն ժամանակաշրջանը։

Սուլթան Աբդ-իւլ-Մէջիդի օրօք, 1839-ին, Գիւլհանէի Հատտի Շէրիֆով Թիւրքիայի բոլոր հպատակների համար՝

առանց ցեղի և կրօնի խտրութեան՝ հաւասարութիւն, կեանքի և գոյքի ապահովութիւն էր խոստացւում։ Ի՞նչ եղաւ դրա հետեւանքը։ — Ոչի՛նչ, աւելի վնաս, քան օգուտ։ Ո՛չ միայն 1839—1856 ընդհանուր բարեկարգութեան տեսակէտով ո՛չինչ չիրագործուեց, այլ Թիւրքիայի բաղկացուցիչ ժողովրդների դրութիւնը և՛ս աւելի վատթարացաւ։ Ընդհանուր բարեկարգութեան պատրուակի տակ՝ տեղական ինքնավարութիւնները խորտակուեցան, խլուեցան այլասեռ տարրերի մասնաւոր արտօնութիւնները և Կեդրոնական Իշխանութիւնը և՛ս աւելի զօրեղացաւ ու իր քանդիչ շօշափելիքները տարածեց երկրի ամէն կողմերը։

Խրիմի պատերազմով (1854-1856), Ֆրանսիան և Անգլիան Թիւրքիան ազատելուց յետոյ՝ ուզեցին նրա մէջ մըտցնել վերանորոգող կեանքի սկզբունքներ։ Պարիզի (30 Մարտ, 1856) Դաշնադրութիւնից առաջ՝ Աբդ-իւլ-Մէջիդը տուեց ամբողջական բարենորոգումների մի Նոր խոստում՝ Հատտի Հիւմայիւնով, 18 Փետ. 1856։ Այդտեղ նորից վերակրկնւում էին Գիւլհանէի Հատտի Շէրիֆով եղած խոստումները։ Այդ նոյն Հատտի Հիւմայիւնը Պարիզի Կոնգրէսին հաղորդուեցաւ և Դաշնադրութեան մէջը յիշուեցաւ։ Եւրոպայի և Թիւրքիայի մէջ մի պայմանագիր կնքուեցաւ— Թիւրքիան խոստանում էր քաղաքակրթուիլ, նոր պետութիւն դառնալ, իսկ Եւրոպան էլ յանձն էր առնում Օսմանեան պետութեան ամբողջականութիւնը պահպանել։

Անցաւ 3 տարի և Հատտի Հիւմայիւնի ո՛չ մի սկզբունքը իրագործուեց։ Բաղկացուցիչ ժողովրդների դրութիւնը է՛լ աւելի վատթարացաւ։

Ընդհանուր բարենորոգումները գործադրելու համար, 1859-ին, դիւանագիտական մի արշաւանք սկսուեց։ Երբ այդ հետապնդումը շարունակւում էր, 1860 ին, յանկարծ Լիբանանի ճիչը բարձրացաւ։—Լիբանանի մէջ աւելի ամուր կերպով հաստատուելու համար՝ Թուրք կառավարութիւնը Դրուզներին գրգռել, ոտքի էր հանել և կոտորել էր տալ Մարոնիտներին։ Թուրք կառավարութիւնը, 20 տարուց աւելի էր, որ աշխատում էր այդ երկրի մէջ ստեղծել կրօնական և ցեղային հակամարտութիւններ, ուր առաջ այդպի-

սի մի երեւոյթ գոյութիւն չունէր։ Պատմական փաստերը եկած էին հաստատելու, որ այդ կոտորածի կազմակերպողը, սադրիչ ոգին և գործադրել տուողը եղած էր ինքը՝ Կեդրոնական Կառավարութիւնը։

Եւրոպայի կողմից, Ֆրանսիայի զինու միջամտութիւնից յետոյ՝ Լիբանանը ստացաւ իր տեղական ինքնավարութիւնը,— մի քրիստոնեայ կառավարիչ՝ ժողովրդից ընտրուած խորհրդականներով, երկիրը պիտի կառավարէր։ Տեղական ժանդարմերիան անկախ էր Պոլսոյ Կեդրոնական Կառավարութիւնից։ Ընդհանուր քրիստոնեայ կառավարչի նշանակումը ենթարկւում էր Մեծ Պետութեանց հաւանութեանը։ Շնորհիւ այդ սիստէմի, Թրքական ընդհանուր անապատի մէջ Լիբանանը եղաւ ազատութեան, կեանքի և գոյքի ապահովութեան մի ովասիս։

Ընդհանուր բարենորոգումների արշաւանքը նորից վեսկսուեց. դարձեալ անյաջողութիւն։

Աբդ-իւլ-Մէջիդը, 1861 ին, մեռնում է և նրան յաջորդում է Աբդ-իւլ-Ազիզը։ Որովհետեւ երիտասարդ գահակալը, իր շրջապատողներով միասին, բարենորոգչական առանձին միտումներ էր ցոյց տալիս, ուստի դիւանագիտական արշաւանքը դադարեց, ամէնքն էլ մտան սպասողական դիրքի մէջ։

1861—1867 բարենորոգչական մի քանի ձեռնարկներ եղան՝ թղթի վրայ։ Իրականութիւնը շարունակեց նոյնը մնալ. ո՛չ մի փոփոխութիւն։ Ֆրանսիական մի յայտնի քաղաքական գործակալ՝ (այդ ժամանակուայ իրերի դրութիւնը) այսպէս է պատկերացնում. "Գողանում, սպանում, հրկիզում են Թուրք բէկերը. գողանում է քրիստոնեայ առաջնորդը. գողանում է եպիսկոպոսը. գողանում է քահանան. գողանում է ղադին, գողանում է միւֆթին, ամէն ոք գողանում է՝ բացի աղաւնուց, այսինքն ր ա յ ե ա յ ի ց, որին ամէնքն էլ փետրահան են անում"։

Աբդ-իւլ-Մէջիդի առերևոյթս բարենորոգումների տենդն էր, երբ 1861-ին Բօսնիան ապստամբեց։

1866—1868 Կրէտական ապստամբութիւնը տեղի ունեցաւ։ Այստեղ էլ, Լիբանանի նման, հաստատուեց տեղական մի սահմանադրութիւն, բայց ո՛չ ժողովրդին բաւականութիւն տալու չափով։

1867-ին ընդհանուր բարենորոգումների խնդիրը դար-

ձեալ դիւանագիտական աշխարհի խորհրդածութեան առարկան է դառնում։ Ֆրանսիան առաջադրում է իր պաշտպանած սկզբունքները, Ռուսիան՝ իրենը։ Գորչակովը ռուսական թէզը կեդրոնացնում է հետեւեալ եռանդուն երկառածի մէջ, "autonomie ou anatomie" (ինքնավարութիւն կամ անդամատութիւն)։

Թուրք կառավարութիւնը նորից յարեցաւ ֆրանսիական սիստէմին՝ իր յանձնառութիւններից խուսափելու համար. և այդպիսով, 1867—1870, ո՛չինչ չկատարուեց, թէև այդ ժամանակ ֆրանսիական ազդեցութիւնը տիրապետող էր Թիւրքիայում։

1870-ին Ֆրանսիան այլեւս չի խառնւում Արևելեան գործերին՝ մեծ չափով։

Թիւրքիայի մէջ ապրող ժողովրդների դրութիւնը երթալով աւելի վատթարանում է։

1875-ին Բօսնիան և Հերցեգովինան ապստամբում են։ Գերմանիան, Ռուսիան և Աւստրո-Հունգարիան մշակում են տեղական բարենորոգումների մի համեստ ծրագիր՝ բացառապէս Բօսնիայի և Հերցեգովինայի մէջ գործադրուելու։ Օսմանեան կառավարութիւնը՝ այդ ծրագիրը ի դերեւ հանելու դիտումով՝ ընդհանուր բարենորոգումների ծրագիրը մէջտեղ գլորեց և 1875-ի վերջերը Աբդ-իւլ-Մէջիդը նախ ստորագրեց մի ֆիրման, յետոյ մէկ իրադէ, որոնցով եռանդուն կերպով վերակրկնւում էին 1839-ի և 1856-ի խոստումները.—"Այսուհետեւ ամբողջ կայսրութեան մէջ՝ ժանդարմները պիտի ընտրուեն բացառապէս ամենաազնիւ մարդիկներից" հաւաստիացնում էր Խալիֆը, ուստի այդ երկու նահանգների համար ա ռ ա ն ձ ի ն ոչինչ չուզեց անել՝ ընդհանրութեանը չվնասելու նկատումով։ Հիւսիսի երեք դահլիճները, սակայն, չուզեցին տեղի տալ. Նրանք մշակեցին Բերլինի յայտնի memorandum-ը, որին հաւանութիւն տուեցին բոլոր պետութիւնները՝ բացի Անգլիայից։ Երբ որոշեալ օրը դեսպանները memorandum-ը պիտի յանձնէին Բ. Դուռը, այնտեղ մարդ չգտան, որովհետեւ նախընթաց գիշերը Սուլթանը գահընկէց էր եղել.—Նրան սպանել էին։

Եկաւ Մուրատ V-ը. շուտով նրան փոխարինեց Աբդ-իւլ-Համիդը. memorandum-ը դարձեալ չյանձնուեց. որոշուե-

ցաւ ժամանակ տալ, որովհետեւ նոր սուլթանը ընդհանուր բարեկարգութիւնների միտում էր ցոյց տալիս և աշխատաւոր ու եռանդուն մէկն էր երեւում: Այս էր իրերի դրութիւնը գարնանը, երբ Բուլղարական մի քանի նահանգներ, աշնանը, ապստամբեցան. 20 հազար Բուլղար կոտորուել էր. յառաջացել էր ընդհանուր զայրոյթ քաղաքակիրթ աշխարհում. պետութիւնները միջամտել ուզեցին, և 1877-ի դեկտեմբեր ամսին, Պօլսի մէջ, կայացաւ Կօնֆէրանս: Կօնֆէրանսը կազմող լիազօրները բարենորոգումների մի ծրագիր մշակեցին, որ պիտի գործադրուէր միմիայն Բօսնիայում, Հերցեգովինայում և Բուլղարիայում՝ եւրոպական երաշխաւորութեան և վերահսկողութեան տակ: Լրիւ Համաժողովին, ուր ներկայ էին և՛ սուլթանի նախարարները, լիազօրները պատրաստւում էին իրենց ծրագիրը պարզելու, երբ յանկարծ թնդանօթները յայտարարեցին որ ամբողջ Թիւրքիան սահմանադրական կառավարչութեան էր վերածուել: "Ինչո՞ւ համար տեղական բարենորոգումների մասին էք դուք խօսում, երբ մենք ազատ կառավարութեան բարիքը տալիս ենք բոլորին՝ անխտիր: Այդ մասնաւոր արտօնութիւնները, որոնց մասին խօսում էք, չեն համապատասխանում նոր հաստատութիւնների ամբողջական ներդաշնակութեանը. ինչո՞ւ համար արտօնութիւններ ազատութեան ծոցի մէջ", — ասում են Թուրք ներկայացուցիչները: Լիազօրները թէեւ չհամոզուեցան, բայց յաջողութիւն էլ չգտան. կօնֆէրանսը վիժեց: Ռուսիան հեռացաւ Եւրոպական Համաձայնութիւնից (Concert européen), և Ռուս-Թրքական պատերազմը բացուեց:

Թիւրքիան պարտուեց:

Սան Ստեֆանօյի Դաշնադրութեան մէջ ինքնավարութիւնների սկզբունքն ընդունուեց:

Բերլինի Դաշնադրութիւնը այն առաւելութիւնը ունեցաւ Պարիզի Դաշնադրութեան վրայ, որ Թիւրքիայի ընդհանուր բարեկարգութեան հարցը չուղեց խնդրի առարկայ անել, և դարձեալ ամէն երկրի տեղական պահանջներին բաւականութիւն տալու սկզբունքն ընդունուեց:

Բերլինի Դաշնադրութիւնից յետոյ՝ Թիւրքիայի մէջ վերստին գործել սկսեց ազգայնական քաղաքականութիւնը՝ բուռն, մոլի կերպով: Նուաճուող ժողովրդների դրութիւնը անտանելի դարձաւ:

1881—1882-ին պետութիւնները հաւաքական ջանքերով աշխատում են Հայկական բարենորոգումները ընդունել տալ, բայց ի զո՛ւր։ Անգլիան մասնաւոր ջանքեր է թափում, դարձեալ անյաջողութիւն։

1885—1890 Հայկական նահանգները յուզումի մէջ են մտնում։ Կարնոյ դէպքից, Գում-Գափուի նշանաւոր ցոյցից և Փոքր Հայքի ալեկոծումից յետոյ՝ տեղի են ունենում Սասունի շարժումները և արժանայիշատակ (mémorable) ապստամբութիւնը (1892—1894) ՄՈՒՐԱՏի ղեկավարութեամբ։ Գծագրւում է Մայիս 11-ի (1895) Ծրագիրը, որ ո՛չ այլ ինչ է, եթէ ո՛չ ինքնավար Հայաստանի մի միջուկ։ Թուրք կառավարութիւնը նորից ընդհանուր բարենորոգութեան խնդիր է յարուցանում։ Պետութիւնները չեն համոզւում, բայց ճնշիչ միջոցի էլ դիմելու կամք չեն ցոյց տալիս՝ բացի Անգլիայից.— և Ռուսիայի, Գերմանիայի չկամեցողութեամբ՝ Մայիս 11-ի Ծրագիրը գործադրութեան մէջ չի մտնում։

Պաշտօնական Թիւրքիան դարձեալ շարունակում է իր կարծեցեալ ընդհանուր բարենորոգութեան խնդիրը։ Տեղի են ունենում Հայկական կոտորածները։

1897-ին Կրետէն նորից ապստամբւում է. Եւրոպական միջամտութիւնից և Յունա-Թրքական պատերազմից յետոյ՝ նա ստանում է իր կատարեալ ինքնավարութիւնը։

1902—1903-ին զէնքի է դիմում Մակեդոնիան։ Յառաջ է գալիս Միւրցշտէգի ծրագիրը, որ իր մէջ ունի ապագայ Ինքնավար Մակեդոնիայի սկզբնաւորութիւնը։

Եւ այսպէս, այս համառօտ գծագրութիւնից դուրս է գալիս հետեւեալ երկու անհերքելի իրողութիւնը.

Առաջին՝ Ընդհանուր Բարենորոգումների Խնդիրը Թուրք կառավարութեան ձեռքին քաղաքագիտական մի հակակշիռ ծրագիր է եղել, որով նա շարունակ աշխատել է հակառակել բարենորոգչական ինքնավարական սիստէմի գործադրութեանը։ Իր գլխաւոր առարկութիւններն են եղել, որ կայսրութեան մէջ ամփոփուած ժողովուրդները անկարող են մէկէն բարենորոգումների շաւղի մէջ մտնել, ուստի իրերը պէտք չէ աճապարեցնել, այլ միջոց տալ, որ ամէն

ինչ աստիճանաբար կատարուի: Բացի դրանից՝ նա առարկել է, որ իր ֆինանսական մասը թոյլ չի տալիս ընդհանուր բարեկարգութիւնները արագացնելու: Եւ այդ երկու առարկութեան գլխաւոր նպատակն է եղել միջոց վաստակել, մինչեւ որ կարողանայ իր զինուորական ոյժը վերակազդուրել և տարասեռ ժողովրդներին իսպառ խորտակել՝ նրանց գոյութիւնը արհամարհելի աստիճանի վերածելու չափ և ընդհանուր օսմանեան ազգութեան գոյութիւնը իրողութիւն դարձնել՝ ամէն ինչ հիմնելով միատարրութեան վրայ:

Երկրորդ՝ Թիւրքիայում մինչեւ ցարդ որ և է գրական և յարատեւող արդիւնք տուել է միայն ինքնավարական սիստէմը: Դրա հետ միասին պատմականօրէն երեւան է եկել և՛ այն, որ տարասեռ ազգութիւնները ա՛յն աստիճան զարգացել են, որ այլեւս անկարելի է նրանց խորտակել, կլանել և ձուլել, նամանաւանդ որ տիրող օսմանեան տարրը թէ՛ յետամնաց է և թէ՛ կուլտուրապէս աւելի անզարգացած:

Մի ուրիշ իրողութիւն էլ այն է, որ Թիւրքիայի մէջ մինչև ցարդ ինչոր կատարուել է, դա չէ եղել ինքնաբերաբար, այլ դրսից եկած ճնշումի, եւրոպական պետութեանց միջամտութեան հետեւանքով,—որը իր կողմից հետեւանք է եղել դժգոհ ժողովրդների զէնքի դիմելուն և յեղափոխական շարժումներ առաջ բերելուն:

Այսպէս է եղած Թիւրքիայի ընդհանուր բարեկարգութեան պատմութիւնը և նրա բնաւորութիւնը, ու դրա համար էլ Թուրք պետութեան գոյութեան երբեմնի ամենաջերմ պաշտպանները և թրքասէրներն անգամ — սկսած Ստրատֆորդ Կաննինգից մինչև պրոֆ. Վամպէրի — ինչպէս և շատ յայտնի քաղաքագէտներ, հրապարակախօսներ ու պետական անձնաւորութիւններ, յուսահատուել են այդ պետութեան ապագային նկատմամբ և մեր օրերում ի՛սկ յանգել են, մօտաւորապէս, հետեւեալ եզրակացութիւններին.

Առաջին՝ ինքն իրեն թողնելով, Թուրք պետութիւնը՝ ինքնաբերաբար և ինքնակամ ո՛չ մի ընդհանուր կամ մասնակի բարեկարգութեան պիտի ձեռնարկի. — Նրան պէտք է ստիպել, հարկադրել վերեւից եկած մի իշխանութեան որոշմամբ, այն է՝ Եւրոպայի:

